

ԻԼՅԻՉ — Նկ. Ն. ԺՈՒԿՈՎԻ

# ՊԱՏՄՎԱԾՔՆԵՐ ԼԵՆԻՆԻ ՄԱՍԻՆ

Վ. ՍԻԴՈՐՈՎ

## ՀԵԾԱՆԻՎՆԵՐՈՎ ԶԲՈՍԱՆՔ



Այս դեպքը պատահել է Փարիզում, ուր մինչև ռևոլյուցիան ժամանակավորապես ապրում էր Լենինը։

Այդ ժամանակ բոլորն էլ տարված էին հեծանիվով։ Լենինը նույնպես հեծանիվ ուներ, որով սիրում էր զբոսնել քաղաքում։

Մի անգամ նա իր ընկերոջ հետ պատրաստվում էր զբոսանքի գնալ։ Ընկերոջ տասնմեկամյա աղջիկը նույնպես ուզում էր քաղաքից դուրս գալ։ Բայց հայրը վախենալով, որ կհոգնի, հրաժարվեց նրան իր հետ վերցնել։ Քիչ էր մնում աղջիկը լաց լիներ։ Բայց Լենինը պաշտպան կանգնեց նրան և պնդեց, որ աղջկան էլ տանեն։

Սկզբում ամեն ինչ լավ էր գնում։ Բայց ճանապարհը դժվար էր, խորդուբորդ, և աղջիկը շուտով հոգնեց։ Որոշ ժամանակ նա ցույց չէր տալիս, բայց հետո սկսեց ետ ընկնել։ Լենինը նկատեց այդ և դիտմամբ դանդաղեցրեց ընթացքը։ Երբ նրանք բարձրանում էին սարը, նա քաշ տվեց իր և աղջկա հեծանիվները։

Աղջկա հայրը բարկացավ և խնդրեց Լենինին, որ նրան չօգնի։

—Ի՞նչ կլինի, եթե նա զբոսանքից հետո մի քիչ հոգնի։ Ավելի լավ կքնի։

Բայց Լենինը վրդովվեց և աղջկա նկատմամբ այդպիսի վերաբերմունքը խայտառակություն համարեց։

—Պետք է այդպիսի ծնողներից երեխաներին խլել։

# ՄԱՆՈՒԿՆԵՐԸ ԼԵՆԻՆԻ ԱՐՁԱՆԻ ՄՈՏ

ԱՐՇԱՎԻՐ ԴԱՐԲՆԻ

Լենին պապին
Մեզ երջանիկ կյանք է տվել։
Այս վարդերը
Մենք բերել ենք նրան նվեր։

Ահա կանգնած
Մարմար քարին,
Լենին պապին մեզ է նայում՝
Ժպտուն, բարի։

Այնքան մեծ է Լենին պապին,
Որ հասել է ճերմակ ամպին։

Նկ. Ն. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ



# ՊԱՇՏՊԱՆԸ

ԳՈՀԱՐ ՖԻԼՈՅԱՆ

Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

Արշիկն այնպես շրխկացրեց փոքրիկ Լենայի թաթիկին, որ նա ամբողջ ձայնով ճչաց։ Հարևան սենյակից, ձայնի վրա դուրս թռավ Արշիկի ընկերը՝ Սերյոժան։ Հենց որ փոքրիկ Լենան նրան տեսավ, ձեռքը պարզած վազեց դեպի նա և ձայն տվեց.

— Սեր-յո-ժա՜...

— Դու էլի՞ խփեցիր Լենային, — Արշիկի վրա ճչաց Սերյոժան, — և թաշկինակով սրբելով աչքերը, սկսեց հանգստացնել աղջկան։

— Քո գործը չի։ Իմ քույրն է, ինչ ուզեմ՝ կանեմ։

— Դե փորձիր մեկ էլ ձեռք տալ, կտեսնես։

— Հենց կփորձեմ։ Ի՞նչ է, քեզնի՞ց եմ վախենում։

Նրանք պատրաստվում էին իրար ծեծկռտել, երբ ներսի սենյակներին երևաց բժիշկ պապիկը՝ երրորդ հարկի հարևանը։ Բժիշկն այնպիսի քաղցրիկ ու փաղաքուշ հայացքով նայեց երեխաներին, որ ամենաթունդ կռվարարն էլ չէր փորձի մյուսի վրա ձեռք բարձրացնել։

Եվ ահա, քանի դեռ բժիշկը բարձրանում էր աստիճաններով, Սերյոժան օգտվելով առիթից, Լենայի թաթիկը բռնած, դուրս եկավ, դուռը շրխկացնելով Արշիկի վրա։

Այսպես, Արշիկը ամեն առիթով ծեծում էր Լենային։ Իսկ Սերյոժան չուներ ո՛չ փոքր եղբայր, ո՛չ քույր։ Նա փոքրիկ Լենային միշտ պաշտպանում էր իր հարազատ քրոջ պես։

Մի անգամ մայրիկը Արշիկին խնդրեց, որ նա Լենայի հետ բակ իջնի, խաղա։



— Ի՞նչ է, աղջիկ, հո չե՞ս ուզում, որ տղաները վրաս ծիծաղեն։ Չեմ գնա,— ասաց Խաչիկը։

— Ես Լենային կտանեմ ման ածելու,— ասաց Սերյոժան և Լենայի հետ բակ իջավ։

Խաչիկը լուսամուտից տեսավ, որ ոչ ոք չի ծիծաղում Սերյոժայի վրա։ Բակի երեխաները իրենք էլ էին խաղում Լենայով հետաքրքրվում։ Մեկը նրան տվեց իր գնդակը, մյուսը՝ ձիերի փայտը, երրորդը նրան բարձրացրեց ընկած տեղից։ Երբ Սերյոժան Լենայի հետ վերադարձավ, Խաչիկը, կարծես թե, նրան չնկատեց էլ։

Իսկ երկրորդ օրը, երբ Խաչիկը ցանկացավ Լենայի հետ դուրս գալ զբոսնելու, նա չգնաց։

— Չեմ ուզում քեզ հետ գալ, Սերյոժայի հետ եմ ուզում։

Խաչիկը լռեց, խռովեց։

Դրանից հետո նա Սերյոժայի հետ ընկերություն չէր անում։

Ես նրանց երկուսին էլ ցույց կտամ,— ինքն իրեն ասաց Խաչիկն ու մենակ նստեց սանդուղքին, սպասելով նրանց։

Մի քիչ հետո դուռը բացվեց, և շեմքին երևացին Լենան ու Սերյոժան։ Լենայի երկար մազը հյուսված էր, մազերը սանրած։ Նրա երկու ձեռքում էլ կարկանդակ կար։ Երևում էր, որ Խաչիկից բոլորովին էլ նեղացած չէ։ Նա ժպտալով կարկանդակներից մեկը պարզեց եղբորը։

— Առ, էս էլ քեզ։

Տեսնելով քույրիկի ու Սերյոժայի զվարթ դեմքերը, Խաչիկը մոռացավ վիրավորանքը, հաշտվեց նրանց հետ։

Դրանից հետո նրանք երեքով էին Լենային զբոսնելու տանում։





# ՈՒՌՆ ՈՒ ԲԱՐԴԻՆ

ԳԵՎՈՐԳ ԳԵՂՈՒՆԻ

Շոգ էր. ամառ. արևը՝ վառ.
Ծարավ էին ծաղիկ ու ծառ:
Ամպը խոնավ՝ աչերը բաց.
Իր բարձունքից գոռաց հանկարծ.
Ծաղիկ ու ծառ. նայեք վերև.
Ո՞վ է ձեզնից ուզում անձրև:
Ուռի ափից ուռին կանչ.
Չէ՛, չէ՛, անձրև պետք չէ. ասաց
Եվ այդպես էլ անձրև չեկավ.
Ամբողջ դաշտը մնաց ծարավ:

Եկան աշնան օրերն ամպոտ.
Տեղաց ուժգին անձրևը հորդ:
Մեկ էլ ամպը հարցում արեց.
Հը՛, ինչպե՞ս է. բավարարե՞ց:
Պատասխանեց հիմա ամպին
Առվից հեռու ապրող բարդին.
Չէ՛, չէ՛, թող գա. էլի՛, էլի՛.
Շատ ենք ծարավ. ամպ սիրելի...
Ու վարարած առվի ջրին
Ավար դարձավ հիմար ուռին:



Նկ. Ա. ՍԻՄՈՆՅԱՆԻ



# ԹՈՒԽՍԸ

ԽԱՉԻԿ ՀՈՒՋՅԱՆ

*Մայրիկը հավի տակ ձվեր դրեց,— տասնյո՞թ ձու, որ ճուտ դուրս գան: Դուրս եկան պստլիկ-պստլիկ ճուտիկներ, ինչ որ ձվի դեղնույց: Մի գլուխ ճռվռում էին ու վազում թխսի ետևից, իսկ թուխսը հպարտ-հպարտ կչկչացնում էր ու չորս կողմը մտիկ տալիս՝ չլինի թե հանկարծ ձագուկներին բան պատահի:*

*Ու ինչ էլ սիրո՜ւմ էր էդ դեղին-մեղին ճուտիկներին... Ցորենի հատիկ կամ հացի փշրանք գտներ թե չէ՝ իսկույն ձենը գլուխն էր գցում, կանչում էր նրանց: Ու հենց որ կշտանում էին, տանում էր տուն ջուր խմելու:*

*Տեսե՞լ եք, թե ճուտիկներն ինչ են ջուր խմում: Չե՞ք տեսել...*

*Փոքրիկ կտուցները հազիվ կըպցնում են ջրին, մի քիչ պահում*



ու հետո գլուխները վեր են տնկում։ Շատ ծիծաղելի է…

Մի անգամ էլ այդպես ջուր խմելիս, ոնց եղավ, ճուտիկներից մեկն ընկավ տաշտը։ Երևի անզգույշ էր եղել, կամ մի գուցե ոտքի տակի հողակոշտն էր ցած սահել։ Ես այդ ժամանակ պատշգամբում նոր ստացած «Պիոներ»-ի նկարներն էի նայում։ Մեկ էլ լսում եմ թխսի անհանգիստ կչկչոցը։ Մտիկ տամ՝ ինչ. պստլիկ ճուտիկը ջրի երեսին անզոր թևիկներն է թափահարում, իսկ թուխսը քրքրված փետուրներով վազում է ջրի հետ, տաշտի մի ափից մյուսն է թռչում, բայց ոչ մի կերպ չի կարողանում ձագին օգնել, ջրից հանել…

Սանդուղքով ցած վազեցի ու մեկ էլ տեսնեմ՝ իմ Բոթոթը արդեն տաշտի մեջ է, ճուտն էլ բերանում։ Նա դուրս նետվեց ջրից, ճուտիկին զգուշությամբ դրեց խոտերին և սկսեց իրեն թափ տալ։ Այստեղ թուխսը վրա ընկավ նրան, սկսեց կատաղորեն կտցահարել։ Բոթոթը ազնվորեն կռնծմռնծաց, վազեց մտավ ոտքերիս արանքը։

Ես բարկացա։

— Բշա՛, ա՛յ հիմար, ախր Բոթոթը փրկեց քո ճուտիկին։

Բայց ո՞ւմն ես ասում… Թուխսը շարունակում էր զայրացած կռթկռթալ ու պտտվել Բոթոթի շուրջը։

Դե, հավի խելք, ինչ կուզես նրանից…

Բոթոթը նեղացած գնաց մտավ իր բույնը։



ՆԿ. Հ. ԳԱԼԵՆՑԻ

# ՆՈՒՆԵՆ

Պ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ



Թռվռում է. ուրախ է նա.
Ի՜նչ նման է թիթեռի.
Հայրը Մոսկվա պիտի գնա,
Ինչե՜ր, ինչե՜ր կբերի։

...Սուլեց գնացքն ու սլացավ.
Կորավ հեռվում կապուտակ։
Տխրեց Նունեն և ինչ-որ ցավ
Զգաց հանկարծ կրծքի տակ։

* * *

Անցան օրեր։ Շատ կարոտեց
Աղջիկը իր հայրիկին,
Զհամբերեց ու նախատեց
Իր թիթեղյա գնացքին.

Ա՛խ, անպիտա՛ն, պապդ ինչո՞ւ
Հեռու տարավ հայրիկիս,
Ե՞րբ է նրան ետ բերելու,
Կարոտից լացս է գալիս...





* * *

Հնչեց զանգը հեռախոսի,
Ձայն է տալիս մայրն ահա.
Արի՛, Նունե, հետը խոսիր,
Մեր հայրիկն է, շու՛տ արա։

Եվ հոր ձայնը լսեց Նունեն.
Բարև, անուշ իմ բալիկ,
Ես քեզ համար, գիտե՞ս, արդեն
Շոր եմ առել, խաղալիք։

Բայց ի՞նչ է մեր սևուկն ասում.
— Հո չե՞ս մնա մի տարի,
Հայրիկ, միայն քե՛զ եմ ուզում,
Ոչինչ մի՛ բեր, դու՛ արի։

Նկ. Ս. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

## ԱՆՄԻՏ ԱՅԾՈՒԿԻ ԱՐԿԱԾՆԵՐԸ

Սկիզբը տես «Պիոներ» № 3.



Շրջում է դաշտում
Նա փորը դատարկ.
Մեկ էլ ի՜նչ տեսնի.
Կաղամբներ շարք-շարք։



Հասավ ու պոկեց
Մի գլուխ կաղամբ.
Բայց մեկը ուսից
Քաշեց կոպտությամբ.



Պահակն էր, գոռաց
— Բռնող կփետե՛մ.
Հետո էլ՝ ողջ-ողջ՝
Կաշին կքերթեմ..

Ս. ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ



## ԽՆՁՈՐԸ

Մայրիկ, նայի՛ր, ես այսօր
Նկարել եմ մի խնձոր,
Ներկել կարմիր ու դեղին,
Երկու տերև էլ ծայրին։
Խնձոր, խնձոր,
Մեղրածոր,
Բայց, մայրի՛կ ջան, չեմ տա քեզ.
Դեռ ճաշդ կեր, հետո նոր
Կտամ՝ խնձորը ուտես...

## ԱՐՋՈՒԿԸ

— Արջո՜ւկ, արջո՜ւկ, ա՛յ բրդոտ,
Ի՞նչ ես կանգնել այդպես մոտ,
Ուզում ես ներկս բերեմ,
Քե՞զ էլ այստեղ նկարեմ։

Բայց մոռացա՞ր, ա՛յ կեղտոտ,
Որ հենց այսօր առավոտ
Չլսեցիր մայրիկին՝
Չլողացար մի կարգին...

Դե լա՛վ, այդքան մի տխրիր,
Ի՛նչ ես այդպես շվարել,
Դե շուտ գնա մաքրվիր,
Արի քե՛զ էլ նկարեմ...





# ՔԱՂՑԱԾ ԳԱՅԼՆ ՈՒ ԵՐԵՔ ՓԻՍԻԿՆԵՐԸ

(Հեքիաթ)

Նկ. Վ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ

Անտառի մոտ գտնվող տնակում ապրում է մի կատու: Նրա անունը Մեծ կատու է, և երեք ձագուկ ունի:

Մի ձագուկը սև է, անունը՝ Սև փիսո: Մի ձագուկը սպիտակ է, անունը՝ Սպիտակ փիսո: Մի ձագուկը մոխրագույն է, նրան էլ ասում են Մոխրագույն փիսո:

Մի օր Մեծ կատուն ասաց.

Երեխաներ, նախաճաշի համար ոչինչ չունենք: Ես գնում եմ շուկա մի բան գնելու: Դուք ձեզ լավ կպահեք և հանգիստ կնստեք, թե չէ Չար գայլը ձեր ձայնը կլսի, կգա:

— Լավ, մայրիկ,— ասացին ձագուկները:

Մեծ կատուն դրեց գլխարկը, հագավ վերարկուն, վերցրեց զամբյուղը և գնաց:

Իսկ երեք ձագուկները նստեցին հանգիստ և աշխատեցին իրենց լավ պահել:

Սև փիսոն մի գիրք վերցրեց ու սկսեց կարդալ:

Մոխրագույն փիսոն թղթի մի կտոր վերցրեց ու սկսեց նամակ գրել:

Սպիտակ փիսոն նստեց լուսամուտի մոտ ու նայեց դուրս:

Չար գայլը ապրում էր մոտիկ անտառում: Նա ուներ սուր, սպիտակ ատամներ, չորս մեծ թաթ և միշտ քաղցած էր:

Նա ճանապարհին տեսնում է Մեծ կատվին շուկա գնալիս ու ինքն իրեն ասում. «Մեծ կատուն տանը չէ, կարող եմ գնալ նրա տուն և խժռել բոլոր ձագուկներին»:

Եվ այսպես, նա եկավ Մեծ կատվի տունը ու դուռը թակեց։

— Ո՞վ է,— հարցրեցին ձագուկները։

— Մայրիկն է,— ասաց գայլը,— դուռը բացեք։

Սպիտակ փիսոն դուռը մի փոքր բացեց ու ճեղքից դուրս նայելով, ասաց.

— Ցույց տուր քո թաթը։

Չար գայլը մեկնեց իր մեծ ու սև թաթը։

— Դա մայրիկի թաթը չէ,— ասաց Սպիտակ փիսոն։— Մայրիկի թաթը սպիտակ է, իսկ քոնը՝ սև։

Չար գայլն սոխված հեռացավ։ Գնում էր նա իր տունն ու ինքն իրեն խոսում. «Թաթս պիտի սպիտակեցնեմ»։

Տանը նա թաթը դրեց ջրի մեջ, բայց ոչինչ դուրս չեկավ. էլի սև մնաց։ Սկսեց փչել թաթի վրա, էլի չսպիտակեց։

Հետո թաթը մացրեց ալյուրի պարկը ու երբ հանեց, տեսավ, որ լավ սպիտակել է։

Չար գայլը կրկին գնաց Մեծ կատվի տունը ու դուռը թակեց։

— Ո՞վ է,— հարցրեցին ձագուկները։

— Մայրիկն է,— ասաց Չար գայլը։





Սև փիսոն դուռը մի փոքր բացեց ու ճեղքից նայեց դուրս։

— Ցույց տուր թաթդ, տեսնեմ,— ասաց նա։

Չար գայլը մեկնեց իր սպիտակ թաթը։

— Թաթդ սպիտակ է,— ասաց Սև փիսոն,— բայց քո ձայնը քաղցր չէ։ Դու մայրիկը չես։— Եվ նա դուռը փակեց։

Չար գայլը գնաց իր տունը և ինքն իրեն ասաց. «Իմ ձայնը պետք է քաղցրացնեմ»։ Եվ նա սկսեց շաքար ուտել։ Այնքան շաքար կերավ, որ ձայնը քաղցրացավ։ Երբ ձայնը քաղցրացավ, կրկին գնաց Մեծ կատվի տունը և դուռը թակեց։

— Ո՞վ է,— հարցրեցին ձագուկները։

— Մայրիկն է,— ասաց Չար գայլը։— Դուռը բացեք։

Կարծեցին, թե մայրիկն է ու դուռը բացեցին։ Բաղցած Չար գայլը ներս մտավ ու սկսեց ծիծաղել.

— Հա՜, հա՜, հա՜, ես հիմա ձեզ կուտեմ։

Ձագուկները վախեցած փախան, որ ազատվեն։ Սև փիսոն ծխնելույզով վեր մագլցեց։ Սպիտակ փիսոն ժամացույցի մեջ թաքնվեց։ Մոխրագույն փիսոն թռավ պահարանի



գլուխը։ Չար գայլը բարկացավ։ Նա փորձեց ծխնելույզի վրայից ճանկել Սև փիսոյին, բայց չկարողացավ։ Նրա ձեռքը այնքան երկար չէր, որ հաներ։

Փորձեց ժամացույցից հանել Սպիտակ փիսոյին, բայց չկարողացավ։ Նրա ձեռքը այնքան երկար չէր, որ հաներ։

Նա փորձեց պահարանի վրայից ճանկել Մոխրագույն փիսոյին, բայց չկարողացավ։ Նրա ձեռքը այնքան երկար չէր, որ հաներ։

Մոխրագույն փիսոն սկսեց պահարանի վրա պարել և ծիծաղել.

— Դու չես կարող մեզ բռնել, պարոն գայլ, պարոն գայլ…

Չար գայլը շատ բարկացավ։ Նա կրճտացրեց սուր ու սպիտակ ատամները և ասաց.

Ես ձեզ կխժռեմ, ես ձեզ կխժռեմ։

Բայց զայրացած Չար գայլը ձագուկներին չկարողացավ ճանկել և խժռել։ Նա հեռացավ առանց նախաճաշի։

Սև փիսոն իջավ ծխնելույզից։ Սպիտակ փիսոն դուրս եկավ ժամացույցի միջից։ Մոխրագույն փիսոն ցած իջավ պահարանի գլխից։

Հիմա, երբ փոքրիկ փիսոները հիշում են քաղցած Չար գայլին, ծիծաղում են, պարում ու երգում։

Թարգմ. Մ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ



Վեր թռավ քնից
Անտառի ջադուն,
Նրա հետ՝ սևուկ
Իր բուն ու կատուն։



Կախարդը դռնից
Ներս մտավ, գոռաց.
— Քեզ սիրո՜վ կուտեմ,
Այծիկ ճլորած։



Անմիտն աղաչեց.
— Թե ինձ բաց թողնես,
Թաղված գանձի մոտ
Կտանեմ ես քեզ։




ՏԱՆ ԿԵ-ՄԻՆ
Չինական գրող

Մի անգամ, նոր տարվա նախօրյակին, տասը ծերունիներ բախտի բերմամբ հավաքվել էին իրար մոտ. Ճերմակ ու երկար մորուքով մի ծերունի ասաց.

— Մի քանի օրից հետո նոր տարի կգա, Եղբայրներ, չդիմավորե՞նք արդյոք այդ տոնը միասին։

Մնացած ինը ծերունիները գլխով արին ու պատասխանեցին.

— Համաձայն ենք։

Նրանք պայմանավորվեցին, որ յուրաքանչյուրը մի սափոր գինի կբերի սպիտակամորուսի տունը, և հենց այնտեղ էլ կդիմավորեն նոր տարին։

Երբ հյուրերը գնացին, սպիտակամորուսը մտածեց. «Եթե ինը հոգին մի-մի սափոր գինի բերեն, ոչինչ չի փոխվի, թե որ ես իմ սափորը ջրով լցնեմ»։ Եվ նա մի սափոր ջրով լցրեց ու սպասեց նոր տարուն։

Սևամորուս ծերունին տուն դառնալիս՝ ճանապարհին մտածեց.

«Այսպես, թե այնպես, ինը ծերունիներից ամեն մեկին մի սափոր գինի է հասնում. իմ սափորը կարելի է և չհաշվել, ես կտանեմ մի սափոր ջուր։ Այդպես էլ կանցնի»։

Եվ սևամորուսը վերցրեց մի ջրով լի սափոր։

Ալեխառն մորուքով ծերունին տուն վերադառնալիս՝ որոշեց.

«Եթե նրանցից ամեն մեկը մեկական սափոր գինի բերի, իսկ ես՝ մի սափոր ջուր, ոչ ոք էլ չի նկատի»։

Սա ևս մի սափոր լցրեց ջրով։

Եվ կարճ մորուքավորը, և խիտ մորուքավորը, և նոսր մորուքավորը, և ճաղատ գլխովը, և թե մյուս բոլորը նույն կերպ վարվեցին։

Ամեն մեկը իրեն խելացի էր կարծում և ուզում էր մյուսներին խաբել։

Եկավ նոր տարին։ Տասը ծերունիները հավաքվեցին սպիտակամորուսի տանը։ Յուրաքանչյուրը բարձրացրեց իր սափորը և կկլոցով դատարկեց մի ընդհանուր մեծ սափորի մեջ։ Հետո ծերունիները նստեցին սեղանի շուրջը. Նրանք զրուցում էին և բաժակ-



Քայլեցին մեկտեղ,
Անցան ձոր ու սար,
Մեկ էլ դեմ առան
Գետակին վարար.



Կախարդին ափին
Կանգնել պատվիրեց.
Մի քայլ ետ գնաց,
Պոզերը սրեց.



Թափ առավ, խփեց
Պառավի փորին,
Ու թըրըմփ. գցեց
Գետակը խորին։



Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

նէրը լցնում։

Մի-մի կում խմելուց հետո, նոր միայն հասկացան, որ իրենցից ամեն մեկը տասն անգամ խաբված է։

Առանց իրար նայելու, առանց մի խոսք արտասանելու, նրանք խմում, խմում էին և մինչև վերջ խմեցին այդ զզվելի, գոլ ջուրը։

— Շնորհավոր նոր տարի, բարեկամնե՛ր...

Այս դեպքը տեղի է ունեցել շատ տարիներ առաջ։ Այդ ծերունիները վաղուց արդեն չկան, բայց այն, ինչ կատարվել է նրանց հետ, այժմ էլ ուսանելի է մեզ համար, այսինքն՝ «Միայն քո մասին մտածելով, միշտ կտուժես»։

Թարգմ. Հ. ՄՈՒՐԱԴՅԱՆ



Հանկարծ կախարդի
Ցնակից փայտե
Լացի ձայն լսեց
Ու վազեց այնտեղ։



Եղած մի տղա
Ու երկու աղջիկ.
— Շնորհակալ ենք,—
Ասին...



Անմիտը նրանց
Ճանապարհ դրեց
Եվ խաչուղու մոտ
Հրաժեշտ տվեց։

(Շարունակելի)



Տրվում է անվճար՝ «Պիոներին» չորրորդ համարի հետ

## ԱԼԻԿՆ ՈՒ ԻԼԻԿԸ

ԼԵՎՈՆ ՆԱՐՈՀ

Ծիծաղում է Ալիկը.
Չկա տատի իլիկը։
   Ալի՛կ, ո՞ւր է իլիկը։
   Գողացել է փիսիկը...
Վա՜յ, հայտնվեց փիսիկը,
Ու կարմրեց Ալիկը.
   Տատի՛, փիսոն չիմանա,
Կտամ իլիկը հիմա։



Նկ. Ս ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

№ 4 1959 թ.
ԱՊՐԻԼ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
31-ՐԴ ՏԱՐԻ




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Եվ չնայած Լենինը այդ խոսքը կատակով ասաց, հայրը լռեց և այլևս չփնթփնթաց աղջկա վրա։

## ԿԻՆՈՆԿԱՐԱՀԱՆՈՒՄ



1918 թվականի օգոստոսի երեսունին էսեռուհի Կապլանը կրակեց Լենինի վրա։ Լենինի կյանքին մի քանի օր մահացու վտանգ էր սպառնում։

Դեպի Կարմիր Հրապարակ, Կրեմլ էին հոսում բանվորների բազմությունները, որպեսզի իմանան Իլյիչի առողջության մասին։ Խոշոր տառերով շարված էին թերթերի վերնագրերը.

«Լենինը պետք է ապրի. այդպիսի՛ն է պրոլետարիատի կամքը»։

Եվ Լենինը ապրեց... Նրա առողջությունը աստիճանաբար լավանում էր։ Շուտով նա անկողնուց վեր կացավ։ Նրան թույլատրված էր զբոսնել։ Ժողկոմխորհի Գործերի կառավարիչ Վլադիմիր Դմիտրիևիչ Բոնչ-Բրուևիչը որոշեց կինոօպերատորներ հրավիրել, որպեսզի Լենինին նկարեն։ Նա գիտեր, թե բանվորները ինչքա՛ն են ուզում տեսնել Լենինին՝ հիվանդությունից հետո։ Ճիշտ է, չափազանց դժվար էր նկարահանում կազմակերպելը։ Վլադիմիր Իլյիչը հազվադեպ էր թույլ՝ տալիս իրեն լուսանկարել։ Սովորաբար նա պատճառ էր բռնում գործերը, և լուսանկարիչները վերադառնում էին ձեռնունայն։ Բոլորովին վերջերս նա հանդիմանել էր Բոնչ-Բրուևիչին, որ թերթերը լցված են իր դիմանկարներով և մահափորձի առթիվ իրեն հասցեագրված ցավակցություններով։

—Ես ցավով եմ կարդում թերթերը,—հուզվելով ասում էր Վլադիմիր Իլյիչը։—Ամեն տեղ իմ մասին են գրում։ Իսկ այդ դիմանկարնե՞րը։ Նայեցեք, ամեն տեղ և ամենուրեք դրանք են... Ո՞ւր թաքնվես դրանցից։

Ես հասկանում եմ, որ ընկերները մաքուր սրտով են այդ անում, բայց ախր չի կարելի այդպես... Խնդրեմ, իմ խաթեր համար, կորեկտ; առանց վիրավորանքի խոսեցեք ում հետ որ պետք է, որպեսզի վերջ տան այդ բոլորին։

Համոզել Լենինին նկարահանվելու կինոյի համար՝ այլևս իզուր կլիներ։

Եվ Բոնչ-Բրուևիչը մշակեց մի հնարամիտ պլան։ Մի արևոտ օր Չինանոցի և Թնդանոթ-արքայի մոտ դարան մտան օպերատորները։ Նրանք եռոտանու վրա դրեցին կինոկամերաները և ուղղեցին դեպի ասֆալտե փոքրիկ ճանապարհը, որով պետք է զբոսներ Վլադիմիր Իլյիչը։

Նշանակված ժամին հայտնվեցին Լենինը և Բոնչ-Բրուևիչը։ Բոնչ-Բրուևիչը եռանդով ինչ-որ բան էր պատմում։ Նա աշխատում էր Լենինի ուշադրությունը հեռացնել նրան ուղղված կինոկամերայից, եվ իրոք, Լենինը տարվեց խոսակցությամբ ու ոչինչ չնկատեց։

Բայց նկարահանման ամենաեռուն պահին Լենինն անսպասելի կերպով շտապեց դեպի առանձնասենյակը։

—Ժամանակն է, սիրելի՛ս,—ասաց նա Բոնչ-Բրուևիչին, երբ նա փորձում էր նրան պահել,—աշխատանքը չի սպասում։

Լենինը կտրուկ շուռ եկավ։ Եվ այդ պահին նա նկատեց մի քանի մարդու, որոնք արագ վերցնելով եռոտանիները՝ փախան ինչքան ուժ ունեին։

—Այդ ի՞նչ է,—զարմացած հարցրեց Վլադիմիր Իլյիչը։—Նրանք ո՞ւր են վազում։ Եվ այդ ի՞նչ է նրանց ուսերին։ Սպասեցե՛ք, ախր կինոնկարահանողներ են։

—Այո, կինոնկարահանողներ,—հաստատեց Բոնչ-Բրուևիչը կոտրված ձայնով։

Լենինը միանգամից գլխի ընկավ, թե բանն ինչում է։

—Ուրեմն ի՞նձ էին ուզում նկարել։ Ո՞վ է նրանց թույլ տվել։ Եվ ինչո՞ւ ինձ չեք նախազգուշացրել։

—Շատ պարզ, Վլադիմիր Իլյիչ,—բացատրեց Բոնչ-Բրուևիչը,—դուք չէիք համաձայնվի նկարահանվել, իսկ դա միանգամայն անհրաժեշտ է։

—Այո, ես համաձայն չէի լինի, դա ճիշտ է,—ասաց Վլադիմիր Իլյիչը։ Բայց եթե դա անհրաժեշտ է, թող այդպես էլ լինի, ներում եմ։ Եվ Լենինը քրքջաց։—Ա՜յ թե լավ բռնացրիք, հա՜։

Իսկ որոշ ժամանակ անց, Մոսկվայի կինոթատրոններում ցուցադրվում էր մի փոքրիկ խրոնիկալ ֆիլմ «Վլադիմիր Իլյիչի զբոսանքը Կրեմլում»։ Հենց

որ Լենինը երևում էր էկրանի վրա. դահլիճը ոտքի կանգնած գոչում էր.

—Կեցցե՜ հարազատ Իլյիչը։

## ԳԱՂՏՆԻ ԽՆԴՐԱՆՔ



Հազարավոր նամակներ ու ծանրոցներ էին գալիս Լենինի անունով։ Բանվորները, գյուղացիները, զինվորները խորհրդակցում էին Լենինի հետ, հոգ էին տանում նրա առողջության մասին։ Եվ շատ հաճախ նամակների հետ լինում էր այսպիսի գրություն.

«Սույնին կից ուղարկում ենք ընկեր Լենինին հիսուն ձու»։

Սովի ու ծանր օրերին մարդիկ Լենինի հետ էին կիսում իրենց վերջին պատառը։

Լենինը չէր սիրում, երբ իրեն նվերներ էին ուղարկում։ Բոլոր ծանրոցները նա իսկույն ուղարկում էր կամ հիվանդանոցները կամ մանկատները։

Եվ մի անգամ, երբ մահուդի գործարանի բանվորները Լենինին ուղարկեցին կոստյումացու կտոր, Վլադիմիր Իլյիչը նրանց այսպիսի մի նամակ ուղարկեց.

«Սիրելի ընկերնե՛ր։ Սրտագին շնորհակալություն եմ հայտնում ողջույնի և նվերի համար։ Սեր մեջ ասած՝ ինձ պետք չէ նվերներ ուղարկել։ Շատ եմ խնդրում այս գաղտնի խնդրանքիս մասին տեղեկացնեք բոլոր բանվորներին։ Ընդունեցեք ամենաջերմ շնորհակալություններս, ողջույններս և ցանկություններս։ Ձեր Վ. Ուլյանով (Լենին)»։

Բայց, իհարկե, դա ոչ մի արդյունք չտվեց։

## ՎԱՌԵԼԱՓԱՅՏԸ



Մի անգամ ժողկոմխորհ՝ Լենինի մոտ եկան գյուղացիների պատվիրակները։ Ձմեռ էր։ Լենինի չտաքացրած առանձնասենյակի լուսամուտները երկու կողմից եղյամակալել էին։ Գյուղացիները, առանց հանելու կիսամուշտակները ու վերնազգեստները, նստեցին սեղանի մոտ։ Երկար զրուցեցին, իսկ հետո, երբ արդեն պետք էր հրաժեշտ տալ, նրանք ասացին.

—Վլադիմիր Իլյիչ, էս ինչո՞ւ է քեզ մոտ էսքան ցուրտ։

—Ցախ չկա,—պատասխանեց Լենինը։—Պետք է տնտեսել։

Գյուղացիները գնացին։

Մի շաբաթ անց. Մոսկվայի կայարաններից մեկում ընդունեցին վառելափայտով բեռնված մի վագոն։ Նրա վրա խնամքով մի խոշոր կավճագիր մակագրություն էր արված. «Մոսկվա. Լենինին»։

Դա գյուղացիների նվերն էր Իլյիչին։

Լենինին ուղղված նամակում նրանք գրել էին.

«...ուղարկում ենք քեզ մի վագոն վառելափայտ, վառարան սարքել տուր. իսկ եթե վարպետ չգտնըվի, գրիր՝ մենք կուղարկենք. մեր գյուղում լավ վառարանագործ կա»։

## ԿԵՆՏԿՈՄԻ ՈՐՈՇՈՒՄԸ



Անչափ շատ էր աշխատում Լենինը։ Նա աշխատում էր առավոտից մինչև գիշեր, և նույնիսկ գիշերը միշտ չէ, որ նրան վիճակվում էր քնել։ Լենինի առողջությունը վատանում էր։

Նադեժդա Կոնստանտինովնան և Լենինի քույրը նրան ասում էին, որ անպատճառ պետք է հանգստանալ, բայց նա միայն ձեռքն էր թափ տալիս. «Ոչի՛նչ, դա էլ կլինի»։

Երբեմն Լենինի հարազատները գալիս էին պարտիայի Կենտկոմ, հաղորդում, որ Վլադիմիր Իլյիչը հասել է անքնության, և որ անհրաժեշտ է շտապ միջոցների դիմել։

Կենտկոմը, Լենինից թաքուն, հավաքվեց և որոշում հանեց արձակուրդի մասին։ Հետո Կենտկոմի քարտուղարը զանգահարեց գործին անտեղյակ Լենինին և որքան կարելի է խիստ՝ ասաց նրան.

—Վլադիմիր Իլյի՛չ, Կենտկոմը որոշում է հանել, որ արձակուրդ գնաք։

Լենինը շատ դժգոհ էր, որ իրեն կտրում են աշխատանքից, բայց չուզենալով առարկել Կենտկոմի որոշման դեմ՝ նեղացած հարցրեց.

—Ե՞րբ եք հրամայում արձակուրդի գնալ։

Մի քանի օր հետո Լենինը մեկնեց Սերձմոսկովյան շրջան։ Այստեղ նա հանգստանում էր. հավաքում էր սունկ, ձուկ էր որսում, բայց ամենից շատ սիրում էր որսի գնալ։ Ճիշտ է, նա քիչ որսով էր վերադառնում, բայց դրա փոխարեն ուզածի չափ թափառում էր անտառներում, լճերի ափերին։

Լենինը արձակուրդի ժամանակ պետական գործերով չէր զբաղվում. նա անշեղորեն կատարում էր Կենտկոմի որոշումը։

## ՎՈՐՈԲՅՈՎՅԱՆ ԲԼՈՒՐՆԵՐԸ



1923 թվականին Լենինը լուրջ հիվանդացավ։ Բժիշկները արգելեցին նրան աշխատել։ Լենինին տեղափոխեցին Վորոբյովյան բլուրները։

Լենինի առողջության մասին թերթերում տպագրվում էին բյուլետեններ։ Մարդիկ դրանք կարդում էին տագնապով և հույսով։ Լենինի վիճակը ծանր էր։

Բայց աշնանը Վլադիմիր Իլյիչը իրեն մի քիչ ավելի լավ զգաց և նա խնդրեց բժիշկներին մի քանի ժամով Մոսկվա գնալ։

Ավտոմեքենան երկար ժամանակ շրջում էր քաղաքում։ Փողոցները լցված էին աշխույժ եռուզեռով։ Պատերազմը վերջացել էր, բայց դեռ շատերի հագին խունացած շինելներ կային։

Մտնելով Կրեմլ, Լենինը գնաց իր առանձնասենյակը։ Միանգամից լռեցին խոսակցությունները, դադարեց գրամեքենաների չխչխկոցը. բոլորի ուշադրությունը գրավեցին նրա ոտնաձայները։

Եվ հետո ավտոմեքենան նորից սլացավ Մոսկվայի փողոցներով։ Լենինը գնում էր Վորոբյովյան բլուրները։

Դա Լենինի վերջին այցելությունն էր Մոսկվային։

Այստեղից, ինչպես ափի մեջ, երևում էր քաղաքը։ Լենինը երկար ու անխոս նայում էր Մոսկվային։ Լսվում էր, թե ինչպես էին զնգում եկեղեցիների զանգերը։ Բայց նրանց խլացնում էին գործարանային շչակների բասային ձայները…

Այդ օրվանից շատ ժամանակ է անցել։ Եվ այժմ Վորոբյովյան բլուրները կոչվում են Լենինյան բլուրներ։

## Լ Ե Ն Ի Ն

ՀԱՍՄԻԿ ՄԱՆԱՍԱՐՅԱՆ

Լենինը աշխարհ էր մի անծայր,
Աշխարհից էլ մեծ մի աշխարհ,
Լենինը չէր միայն մի անուն,
Նա մտավ ամեն սիրտ, ամեն տուն:

Լենինը՝ մեծ բախտի արշալույս,
Լենինը՝ սուրբ գործի հավետ հույս,
Լենինը՝ անկաշառ մի զինվոր
Նոր կյանքի պայքարում փառավոր:




ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

Լեռներից մեր հովասուն,
Կատարներից ծյունաթագ
Ուրախ ներքև է հոսում
Ժիր, քչքչան մի վտակ:

Ասես՝ միայն մանկան պես
Երգում է նա ու պարում,
Բայց այդ փոքրիկն, արի տես,
Մեծ գործեր է կատարում:

Ամռան շոգին ու տապին
Անուշ զով է տարածում,
Կանաչ, թավիշ իր ափին
Գառնուկներն են արածում:

Տոչոր սիրտը հնձվորի
Զովացնում է պաղ ջրով,
Հովիվների սրինգին
Ձայնակցում իր երգերով:

Ու հնիհն հասնելով
Ծարավ-պապակ արտերին,
Փարվում է նա կարոտով
Ամեն ծաղկին ու ծիլին:

Փարվում է ու համբուրում
Շուրթերով իր կենարար,
Եվ ծաղկում են ու բուրում,
Կանաչում են հող ու քար:




ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ

Նախաճաշից հետո Վահանիկը դուրս եկավ պատշգամբ: Ճնճղուկները նրանից խրտնելով՝ թռան պատշգամբից, իջան պարտեզի մերկ ծառերի վրա: Վահանիկն առաջին անգամ նկատեց նորելուկ բողբոջների կմբիկները ճյուղերին: Մի քանի օր առաջ դրանք ծածկված էին ձյունով: Բնի առջև գոլ հողի վրա մեկնվել էր Բողարը, գլուխը թաթերի վրա մեկնած, չգիտես Վահանիկի՞ն, թե՞ արևին ողջունելով, թափահարում էր երկար պոչը, իսկ կիսախուփ աչքերի մեջ ցոլում էին արևի ճառագայթները:

Փողոցի մյուս կողմում խուլ ճռռաց Սեթենց պարտեզի դռնակը, և ռետինե երկարաճիտ ոտնամանները ցեխի մեջ չլփացնելով, փողոց դուրս եկավ մի տղա: Վահանիկը պատրաստվեց ձայնել նրան, բայց նա իսկի Վահանիկի կողմն էլ չնայեց, մտազբաղ քայլեց փողոցով:

—Սե՛թ...

Բավական ժամանակ անցավ, մինչև Սեթը դարձրեց գլուխը:

—Այդ ո՞ւր, Սե՛թ

Գործով: —Սեթը պատասխանեց գործնական լրջությամբ և անհետացավ փողոցի անկյունում: Վահանիկը տխրեց: «Նա կարծես նեղացած էր ինձնից: Ինչո՞ւ... զարմացրեց... —մտածեց Վահանիկը բակ իջնելով. Ես էլ իմ գործն ունեմ»: Եվ հանկարծ նա զգաց, որ ինքը ոչ մի գործ էլ չունի: «Իսկապես, ի՞նչ կարելի էր անել» —մտածեց Վահանիկը: Կարելի է առվակի վրա ջրաղաց շինել, կարելի է օդապարիկ սարքել կամ պարսատիկ... Բայց ոչ, Վահանիկը ցանկանում էր անել այնպիսի բան, որ Սեթի մտքովն էլ չէր անցնի: Ուրիշ ժամանակ, երբ հնարավոր չէր լինում գործի ձեռնարկել, ինչպե՞ս լավ ծրագրեր էին ծագում իր գլխում... Գոնե մեկը հիշեր:

Նա նայեց շուրջը: Ծառերի խոնավ ճյուղերը փայլում էին արծաթաշող և, երբ Վահանիկի աչքերը շլանում էին այդ փայլից, նրան թվում էր, թե դրանք ճյուղավոր շողքեր են հնավոր սարերի սպիտակ կրծքին անշարժացած... «Համոզվել եմ, ժամանակն է սկսել, —մտածեց նա— Մի այնպիսի բնագիտական հավաքածու պատրաստեմ, որ Սեթը չունի»:

Երբ Վահանիկը զվարթ ձայնեց՝ «Դե՛, Բողար, մենք սկսեցինք մեր գործը», Բողարը լայնացրեց աչքերը, շարժեց ականջները և ոչինչ անհասկանալի չնկատելով, տարուբերեց պոչն ու կկոցեց աչքերը: Անցավ բավական ժամանակ, մինչև Բողարը կրկին լայն բացեց աչքերն ու ցցեց ականջները: Այդ մուրճի թխկոցից էր. Վահանիկը պատշգամբում մեխում էր իր կտրատած տախտակի կտորները:

Քիչ հետո գոհ նայելով պատրաստի արկղիկին, Վահանիկն ուզում էր ձեռնարկել երկրորդ արկղիկի պատրաստմանը, երբ հանկարծ մուրճը վայր դրեց: Արկղիկի տեսքը նրան հիշեցրեց... «Բողա՛ր, չէ՞ որ ես շատ եմ մտածել այդ մասին... Ինչո՞ւ հենց հիմա չշինել այդ...» —բացականչեց նա և ոգևորված վերցրեց սղոցը: Սեթենց տան կողմից մի ձայն գրավեց նրա ուշադրությունը, լայն բացված դռնակից Սեթը ներս էր քաշում թևատակին սեղմած երկու տախտակ:



* * *

Թևատակի տախտակները շրխկոցով ցցվել բակի մեջտեղը. Սեթը ձեռքով թափ տվեց բաճկոնի փոշոտ թևատակը, բայց Վահանիկենց տան կողմից նրա ականջին զիլ պարզ ձայն, և ձեռքն անշարժացավ օդում։ «Տեսնես ի՞նչ անելու համար է, արդյոք բարձրացրել» մտածեց Սեթը և անմիջապես մոռանալով Վահանիկին, շարունակեց թափ տալ փոշոտ թևատակը։

Պատշգամբից Սեթը բակում ընկած տախտակների մոտ շպրտեց մի մուրճ, մի քանի մեխ, դուր և սղոց. ապա ինքն էլ իջնելով բակ, նստեց տախտակների մոտ։ Նա սկսեց պատրաստել մի արկղ, որի վրա բռունցքի մեծությամբ մի անցք կար։ Ետևի կողմից մեխեց մի երկար ձող, և սարյակի բույնը պատրաստ էր։ Նա որոշեց, որ ամենից լավ կլինի բնի պատերը ներկել կանաչ, կտուրը կարմիր, և հիշեց էլ, որ կանաչ ներկ չունի. «Վաղը գյուղում տղաներից կճարեմ»—մտածեց նա։ Բայց նա ցանկանում էր անպայման այսօր, հենց հիմա կտուրի վրա կանգնեցված տեսնել սարյակի բույնը։

Սեթը սարյակի բույնը վերցրած, փայտե սանդուղքով բարձրացավ կտուր։ Նա սարյակի բույնը կանգնեցրեց իր ընտրած տեղում, պատվանդանի վերևում և պատրաստվում էր վայր իջնել, երբ լսեց Վահանիկի մուրճի ձայնը։ Վահանիկը կտուրի եզրին պառկած, ինչ-որ բան էր մեխում։ Սեթն ավելի ուշադիր նայեց և Վահանիկի գլխավերևում նկատեց ճիշտ իր սարեկաբնի նման մի բան։ Վահանիկը նրա ձողն էր մեխում իրենց կտուրի եզրին։ «Մի դրա՛ն նայիր,—մտածեց Սեթը.—երեկ դասարանում չէր թողնում, որ իրենից սովորեն թվաբանական խնդրի լուծումը, իսկ այսօր ինքն է սովորում ինձանից...»

—Հե՜յ, կապիկ Վահանիկ, հիմա ես քեզ գլխի վրա կգցեմ կտուրից...

Վահանիկը նայեց Սեթին, ոչինչ չպատասխանեց և շարունակեց մեխել։ Երևի ոչինչ չհասկացավ։

Իր ձողերից գոհ, Սեթն իջավ բակ, այնտեղից նայեց վեր, կտուրի վրա տնկված սարեկաբնին և դրանից էլ գոհ, ժպտաց քթի տակ։ Ապա նա մոտեցավ բակի մեջտեղում թափված տախտակի կտորներին։ «Հիմա սկսենք արկղիկները պատրաստել բնագիտական հավաքածուի համար։ Եթե Վահանիկն իմանա, բերանը բաց կմնա...»

* * *

Հետևյալ առավոտյան, դասի գնալիս իրենց պարտեզների դռների առջև Վահանիկն ու Սեթը հանդիպեցին։ Այդպես հաճախ էր պատահում։

—Բարի լույս, Սեթ։

—Բարև,—պատասխանեց Սեթը և քայլեց։

Նրանք քայլում էին իրարից բավական հեռու, յուրաքանչյուրը փողոցի մեջտեղով ընթացող առվի մի կողմով։ Բավական ճանապարհ նրանք քայլեցին լուռ։

—Ես իմ սարյակի բույնը ներկել եմ,—հանկարծ հայտարարեց Սեթն այնպիսի շեշտով, որ կարծես ուզում էր ասել՝ «Տեսնում եմ, հիմա արդեն կարող ես ընդօրինակել և դու էլ քո սարյակի բույնը ներկել... բայց արդեն չես կարող ժխտել, որ դու սովորում ես ինձնից...»

—Ես էլ իմ սարյակի բույնը կանաչ պիտի ներկեմ, իսկ տանիքը՝ կարմիր,—ասաց Վահանիկը։

Սեթը հանկարծակիի գալով, նայեց Վահանիկին.



Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

նրան թվաց, թե ինքը Վահանիկին պատմել է իր սարյակի բույնը ներկելու մասին, բայց և իսկույն հիշեց, որ այսօր առաջին անգամ է խոսում նրա հետ...

—Այդ դու՞ ես այդպես մտածել, Վահան։

Վահանիկը կարծես չլսեց Սեթի հարցը և, երևի, ոչինչ արտասովոր չնկատեց նրա ձայնի մեջ։ Կրկին բավական անց նրանք քայլեցին լուռ, յուրաքանչյուրը առվի մի կողմով։ Սեթը ցանկանում էր ասել այն մասին, ինչից Վահանիկի բերանը բաց կմնար։

—Սեթ, ես որոշել եմ սեփական բնագիտական հավաքածու կազմել, գիտե՞ս...—ասաց Վահանիկը, և Սեթի բերանը, ճիշտ որ, բաց էլ մնաց։

Սեթը կանգ առավ։ Ո՛չ, Վահանիկի դեմքին ոչ մի արտասովոր բան չկար։ Վահանիկին թվում էր, թե Սեթի աչքերը նայում էին մորթե գլխարկի տակից ճակատին թափված մազերի արանքից, այնքան երկար էին այդ մազերը։

—Բնագիտական հավաքածո՞ւ...—Սեթի ձայնը

խոսվում էր։ «Իսկ ես այդ մասին ոչինչ չե՞մ ասել քեզ» ցանկանում էր ասել նա, բայց ամաչեց։ Ես էլ վաղուց եմ մտածել այդպիսի հավաքածու ունենալու մասին։ Իսկ երեկ արկղիկներ պատրաստեցի...

Նրանք լռեցին և կրկին բավական տեղ քայլեցին լուռ։ Հանկարծ ցատկելով առվի վրայից, Սեթը հայտնվեց Վահանիկի կողքին։

— Վահանիկ, արի միասին կազմենք հավաքածու. համաձայն ես։

Նրանք կանգ էին առել։ Վահանիկը նայեց Սեթի աչքերին. չէ՞ կեղծում նա. իսկ Սեթի աչքերը խույս էին տալիս։ Բայց Սեթի ձայնը անկեղծ էր հնչել։ Վահանիկը այդ զգաց։

— Տո՛ւր ձեռքդ, Սեթ,— ասաց Վահանիկը և մեկնեց ձեռքը։

— Միասին... ասաց Սեթը, իր ափով հարվածելով Վահանիկի ափին և սեղմելով նրա ձեռքը... Այժմ Սեթի աչքերը չէին խուսափում Վահանիկի աչքերից, և Վահանիկը որսաց նրա հայացքը, անկեղծ, բարեմիտ հայացքը...

Մինչև դպրոց, երկու ընկերները, պայուսակները թևատակերին սեղմած, քայլեցին իրար կողքի, ուրախ զրուցելով, ինչպես միշտ՝ քչքչացող առվի միևնույն ափով։

## „ՈՒԺԵՂԸ"

ՄԻՔ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

— Պայուսակիդ մեջ ի՞նչ կա, Խորե՛ն.
— Պատի՞վ, — ասում է, — գրքե՛ր. էլ ի՞նչ.
Թող ուրիշները դաս սովորեն,
Իսկ ես խաղալ եմ ուզում մի քիչ։

Եվ նա գրքերը նետած բակում,
Սարքում էր հազար տուր ու դմփոց.
Պատուհաններին քար է զարկում,
Թիրախ է, ասես, ոչ թե դպրոց։

— Այս դասին ինչո՞ւ չհուշեցիր.
Կնշանակեր զրոն երեք.
Դասղեկին կարծեմ դու՞ մատնեցիր.
Որ զանգը ե՛ս եմ հանել երեկ։

Ու միշտ ուզում է մի պատրվակ.
Է՜յ, ո՞վ կարող է փախչել դասից.
Արագ եմ գալիս, թե չփախա՞ր.
Մի կինոյի տոմս՝ առնես տաս ինձ...

Ու թռչում է, ինչպես ճպուռ,
Բայց ահա զանգը կանչում է ներս.
Տղան կծկվում է, դառնում մի բուռ,
Նստում է անմեղ աղավնու պես։

Ա՜խ, այդ թռչնակին թողեք գնա,
Կանչում է թեթև գարնան քամին.
Դասամիջոցին ուժեղ է նա,
Ափսո՜ս, որ թույլ է դասի ժամին։

Սակայն նստած է խոնարհ ու խեղճ,
Դաս չհարցնեք՝ մեղք է տղան.
Այնքա՜ն խնդրանք կա աչքերի մեջ,
Հայացքը բարի, դեմքը՝ խաղաղ...

— Ինձ խանգարում են, — ասում է միշտ. —
Տեղս փոխեք, որ լավ սովորեմ.
Փոխում են, հիմա ընկերն ուրիշ.
Իսկ ինքը նույնն է՝ անկարգ Խորեն...

Թանաքամանը շրջում է նա
Եվ մեղքն ընկերոջ վրա նետում.
Գուցե ինքը չէ՞ր. ո՞վ իմանա,
Եվ ի՞նչ եք այդպես դուք նախատում։

Ա՜յ, սուտասանն է «ուժեղ» տղան,
Խառնել է իրար չար ու բարին.
Եթե ուզում եք տեսնել նրան,
Լավ նայեք դուք ձեր դասարանին։



Նկ. Հ. ԳԱԲՈՒՉՅԱՆԻ

# ԿՏՐԻՉԸ

ԱՐՏ. ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ

Նկ. Ս. ՍԱՖՅԱՆԻ

*Արհեստանոցում կանգնել, քարացել է մեքենաների աղմուկը։ Անծանոթին կթվար, թե մեկը միացրել է պատեֆոնը և նրանից հետո մոռացել է անջատել այն, ու ասեղը վերջին ակոսի վրա պտտվում, հա՛ պտտվում է խուլ, միալար...*

*Բայց Զավենն այդ կարծիքին չէ։ Նա ամեն մարդու հետ կարող է համաձայնել, բայց ոչ նրա, թե իբր՝ խառատի իր հաստոցի ձայնը նման է, ասենք, Սեդրակի հաստոցի ձայնին։ Եթե այդպես է, ինչո՞ւ ինքը լսում է իր հաստոցի ձայնը անգամ հեռվից, որսում է բոլոր, բոլոր մեքենաների ձայների միջից։ Ոչ, իր մեքենայի ձայնը բոլորովին ուրիշ է. եթե կուզեք իմանալ՝ ավելի նուրբ, որոշակի. ինքը միշտ ժամանակին է լսում նրա ձայնը։ Ճիշտ է, մյուսներն էլ վատ չեն նայում, բայց ինչ ուզում եք ասեք՝ իր մեքենայի ձայնը ուրիշ է...*

*Ինքն իր հետ խոսում է Զավենը և ուշադրությամբ հետևում մշակվող դետալին։ Պետք է զգույշ լինել, շատ զգույշ։ Փոքր են դետալները, նուրբ. մի սխալ, ու կոպեկի արժեք անգամ չեն ունենա։*

*Զավենը նայեց շողշողուն դետալներով լի արկղին ու մտածեց, որ այսօր էլ «գերպլանից» կստանա։ Վարպետ Մուշեղը, ինչպես միշտ, աշխատանքից սևացած ու կոշտ ձեռքը կդնի իր ուսին, մյուս ձեռքով կվերցնի դետալները, ապա կասի բարձրաձայն, հայացքը ոչ թե Զավենին, այլ մյուսներին հառած.*

*— Զավեն, ստանում ե՛ս «գերպլանից»։*

*Երբ առաջին անգամ վարպետը Զավենին ուղղեց այդ խոսքերը, տղան կարմրեց, թե իր անունը շփոթեցին։ Նրա սիրտը ուժգին և հաճելիորեն տրոփեց։ Նրան թվաց, թե բոլորը, բոլո՛րը իրեն են նայում։*

*Բայց գուցե երբեք Զավենը այնքան չի ցանկացել «գերպլանից» ստանալ, որքան այսօր։ Դրա համար է հուզված նա։ Ստուգողական աշխատանք է։ Ինքը՝ ուսումնարանի դիրեկտորն է գալու արհեստանոց, որպեսզի ծանոթանա տղաների աշխատանքին։ Եվ գուցե հենց այսօր էլ որոշվի, թե ով է գնալու Մոսկվա՝ պատանի խառատների համամիութենական հավաքին։*

*«Դե, իհարկե, ինձ կտանեն,— մտածեց Զավենը,— ուրիշ էլ ո՞ւմ։ Բայց հարկավոր է շտապել, պատրաստած մասերը դեռ քիչ են երևում։*

*Նա շարունակեց դեպի աչք մոտեցնել փոքրիկ անիվը ու շարժական կտրիչն ավելի մոտեցրեց դետալին։ Միայն թե արագ լինի։ Մետաղը սուր ծղրտաց, ճչաց ցավից ու շիկացավ։ Զավենը իսկույն ետ դարձրեց բռնակը։ Բայց արդեն ուշ էր. լսվեց չոր մի ճայթյուն՝ կտրիչի ծայրը ջարդվել էր։*



*Նա մի պահ կանգնած մնաց՝ չհավատալով աչքերին, հետո կռացավ, նայեց, հանեց կտրիչը ու մրմնջաց.*

*— Ա՜յ քեզ խայտառակություն...*

*Մի վայրկյան ուզեց գնալ վարպետ Մուշեղի մոտ ու նոր կտրիչ խնդրել, բայց հիշեց, որ իր կտրիչը միայն երեկ է վերցրել վարպետից և եթե նորից ուզի, վարպետն անպայման կբարկանա։ Իսկ եթե բարկանա, գուցե «գերպլանից» չդնի և... և ստուգողականը...*

*Զավենը շվարած շուրջը նայեց։ Ի՞նչ անել...*

*Նրանից քիչ հեռու անտարբեր կանգնած էր Կարոյի հաստոցը։ Կարոն չկար։*

*Ինչ-որ բան առաջ հրեց Զավենին։ Նա նայեց վարպետ Մուշեղի կողմը։ Կարոն նրան ինչ-որ բան էր ասում։ Վարպետը թեքվել էր փոքր-ինչ, ձեռքը ականջին էր դրել ու լսում էր։*

Ի՞նչ անել...

Հաջորդ վայրկյանին Զավենը նետվեց դեպի Կարոյի հաստոցը, դողացող մատներով արագորեն հանեց կտրիչը, փոխարինեց իր ջարդվածն ամրացրեց ու ետ դարձավ։

Մի պահ կանգնած մնաց՝ գլուխը կախ։ Սիրտը տրոփում էր ուժգին։ Զավենը լսում էր նրա զարկերը։ Վախենում էր գլուխը բարձրացնել։ Թվում էր, եթե նայի, ապա կտեսնի ընկերների մռայլ հայացքները, վարպետի վշտացած աչքերը, Կարոյի զարմացած դեմքը։

Նայեց կողքերի արանքից։ Ոչ ոք չէր նկատել։ Տղաները եռվում աշխատում էին։ Կարոն լսել էր ու հիմա էլ վարպետ Մուշեղն էր խոսում՝ սովորականի պես ձեռքը տղայի ուսին։

— Ջհանամ,— հանգստացավ Զավենը։ Սրտի բաբախյունը փոքր ինչ մեղմացավ,— ջհանամ,— արդեն բարձրաձայն ասաց նա։

Բայց, զարմանալի բան, դրանից թեթևություն չզգաց. ասես ավելի լավ կլիներ, եթե մեկը կանչեր.

— Տեսա՞ք, Զավենը գողացավ Կարոյի կտրիչը։



Բայց ո՛չ ոք ոչինչ չէր նկատել։ Ամեն մեկն իր աշխատանքն ունե՜ր ու դրանով էր զբաղված.

Զավենը միացրեց հաստոցը, գործի դրեց մեքենան ու կտրիչը մոտեցրեց ժանգոտ մետաղին։ Մետաղը ցածրաձայն սուլեց, ասես ոչինչ էլ չէր եղել, ու շարունակեց մերկանալ, շողշողալ՝ ժանգոտ մաշկերը օղակ-օղակ գետին նետելով։

Հոգ չէ՞ր, բայց քրտինքը դանդաղորեն գլորվում էր նրա մազերի տակից։ Զավենը մտածում էր, ուզում էր արդարացնել իրեն։ Չէր վերցնի, եթե ջարդվեր իր կտրիչը, չէր վերցնի, եթե ստուգողական աշխատանք չլիներ, եթե չլիներ Խարկով գնալու հույսը։ Իսկ Կարոյի՞ն ինչ։ Նա գերազանցիկ չէ, նրան Խարկով չեն տանի։

Խարկով... Զավենը գիտեր այդ քաղաքի մասին, երբ շատ-շատ փոքր էր, հայրիկը մի ամառ գնացել էր տրակտորի գործարանը ու եկել։ Ինքը նստում էր նրա ծնկներին, ոլորում էր բանվորի կոճակները, որից միշտ բենզինի սուր հոտ էր փչում, ու խնդրում էր կամացուկ.

— Պա՛պ, էլի պատմի տրակտորի մասին։

Հայրիկը ծիծաղում էր...«Տրակտորի՞ստ ես ուզում դառնալ» — ու պատմում էր։ Հետո գնաց պատերազմ ու էլ ետ չեկավ։ Վերջին նամակն ստացան Խարկովից։ Ուրիշներն էին գրել. «Անհետ կորել է», հեկեկաց մայրը։

Խարկով... Զավենին միշտ թվում էր, որ եթե գնա Խարկով, անպայման կգտնի հայրիկին... Իսկ կտրիչը ջարդվեց։ Ա՜յ, եթե այսօր էլ կատարի իր առաջադրանքը ու «գերազանց» ստանա, կուղարկեն Խարկով.

Աշխատում էր Զավենը։ Նա մի պահ մոռացել էր ամեն, ամեն ինչ. մեքենան, կտրիչն, իրեն ու աշխատում էր ինքնամոռաց, ինչ-որ բնազդով իրար ետևից նոր ու փայլուն հեղույսներ նետելով արկղը։ Նա սթափվեց միայն այն ժամանակ, երբ բոլորովին իր կողքին աղմկեց Կարոյի մեքենան։ Ա՜խ, հա՜, իհարկե, ինքը վերցրեց կտրիչը, ու Կարոն հիմա չի կարող աշխատել։ Դեռ չի նկատել, հիմա որ որ է...

Զավենն աշխատեց չնայել Կարոյի կողմը, բայց չկարողացավ։ Նայեց զգուշորեն, գողեգող ու տեսավ իր ընկերոջ՝ Կարոյի այլայլված դեմքը, որը մոռացել էր անջատել մեքենայի հոսանքը ու շփոթված, ընկրճված կտրիչին էր նայում։

* * *

Կարոն նայում էր կտրիչի ջարդված ծայրին ու մտածում. «Հրա՞շք էր, ինչ է, ե՞րբ ջարդվեց, որ չնկատեցի։ Ինչ վատ եղավ, դե արի ու նորից խնդրի վարպետին»։

Նա ոչ մի անգամ չնայեց ընկերների կողմը. նրա հայացքը տարակուսանքից բացի, ուրիշ ոչինչ չէր արտահայտում, նա չէր կարող մտածել, որ իրենց խմբում գողություն է կատարվել։ Եվ եթե մատնացույց անեին Զավենին, Կարոն կծիծաղեր...

— Ա՛յ քեզ բան,— մրմնջաց նա՝ երերուն քայլերով դեպի վարպետն ուղղվելով։

— Ի՞նչ կա,— հեռվից հարցրեց վարպետը,— ուզում ես հիմա՞ գնալ։ Եթե առաջադրանքդ կատարել ես՝ կարող ես։

— Ո՛չ, ո՛չ, վարպետ, կտրիչս...

— Ջարդվել է, հա՞,— վարպետ Մուշեղը լուռ բացեց գործիքների պահարանի դուռը ու մի նոր կտր-

րիչ մեկնեց Կարոյին,— վերցրու, միայն թե զգույշ։

...Կարոն նորից սկսեց աշխատել, բայց այլևս ոչ առաջվա եռանդով։ Տրամադրությունն ընկել էր։ Հիմա վարպետը տեսնես, ի՞նչ է մտածում, ախր ինչպես ջարդվեց, չէ՞, ինչո՞ւ կլինի, ինչպես, մի՞-թե...

Ինչպես մի մոռացված երգ, որ երբ հանկարծ միտդ է ընկնում, անընդհատ հնչում է ականջիդ ու չես կարողանում հեռացնել այն, կոտրված կտրիչը չէր հեռանում Կարոյի մտքից։ Մտածում էր բոլորովին տարբեր բաների մասին, բայց անընդհատ ու անվերջ նրան տանջում էր այն միտքը, որ վատ, շատ վատ պատմություն ստացվեց, որ հավանաբար վարպետ Մուշեղը չհավատաց իրեն...

Իսկ կողքի հաստոցի մոտ գլխիկոր աշխատում էր նրա ընկերը՝ Ջավենը։

Նրա հոգում այդ պահին երկու ձայն էին խոսում։ Մեկն ասում էր. «Ինչպե՞ս լռեցիր», չէ՞ որ քո պատճառով տուժեց ընկերդ, հենց հիմա գնա, հայտնիր նրան ու ներողություն խնդրիր»։ Իսկ մյուսը թե՝ «Էհ լավ, ի՞նչ մեծ բան է։ Չէ՞ որ նրա համար միևնույն է, նա գերազանցիկ չէ։ Հետո տեսա՞ր, վարպետը իսկույն նրան ուրիշ կտրիչ տվեց, իսկ քեզ գուցե չտար էլ»։

Թվաց, թե հանգստացավ, բայց երբ թարթեց, աչքի պոչով ընկերոջը նայեց, տեսավ, թե որքան տխուր է նրա դեմքը, շարժումները որքան դանդաղ, ամոթի մի այնպիսի ցավ զգաց սրտում, որ պատրաստ էր ճչալ, հայտնել բոլորին իր մեղքը։

* * *

Զանգը հնչեց։ Միանգամից լռեցին հաստոցները։ Թվաց, թե արհեստանոցը դատարկվեց։ Բայց և իսկույն այս ու այն կողմից դուրս վազեցին կապույտ արտահագուստներ հագած պատանի խառատները։ Նրանք մտնում էին իրար, ստուգում միմյանց արկղիկների պարունակությունը և ուրախ բացականչում, երբ քանակապես հաղթող էին դուրս գալիս...

Բայց որոշողը, իհարկե, միայն քանակը չէր...

Քիչ անց նրանք՝ ըստ դասամատյանի, հերթականությամբ մոտենում էին լայն դրասեղանին, որի հետևում վարպետ Մուշեղն ու արհեստագործական ուսումնարանի դիրեկտորն էին նստած, հանձնում էին պատրաստի հեղույսներն ու սրտատրոփ սպասում գնահատականի։

Հերթը Կարոյին հասավ, նա համոզված էր, որ վատ են ստացվել իր հեղույսները և գուցե դա էր պատճառը, որ մոտենում էր գլխահակ ու տխուր։

— Դժգոհ եմ քեզանից, Կարո՛,— կամացուկ արտասանեց վարպետը,— չգիտեմ ինչ է պատահել այսօր քեզ։ Կտրիչը ջարդեցիր, արտադրանքիդ կեսն էլ խոտան է։ Դնա՛, «միջակ» եմ նշանակում։

Կարոն չպատասխանեց։ Ինչպես մոտեցել էր գլխահակ, այնպես էլ հեռացավ՝ անընդհատ մտածելով ջարդված կտրիչի մասին.

— Սիմոնյան Ջավեն։

— Սիմոնյան Ջավե՛ն,— կրկնեց վարպետը։

Ջավենը սթափվեց ու մոտեցավ։ Դեմքը գունատ էր, աչքերը հառել էր ցած։

— Ի՞նչ է եղել, տղա,— անհանգստացավ վարպետ Մուշեղը,— հիվա՞նդ ես,— ու ձեռքը, սովորության համաձայն, դրեց տղայի ուսին,— հապա տուր այստեղ հեղույսները... Օհո՜, նայեցե՛ք, ընկեր դիրեկտոր, ինչպես երևում է, Ջավենն է հաջող գնալու։

— Չե՛մ ուզում,— հանկարծ բղավեց Ջավենը։

— Ի՞նչ,— շփոթվեց վարպետը։

— Չե՛մ ուզում, չե՜մ ուզում, չեմ ու— զու՜մ...

* * *

Գիշեր է։ Քնել է աշխարհը։ Քնել են նաև արհեստագործական ուսումնարանի աշակերտները։ Մի սենյակից միայն ինչ-որ խեղդված շշուկներ են լսվում։ Կարոն ու Ջավենն են։ Մահճակալները մոտ են բերել, որպեսզի արմունկներով կարողանան շոշափել իրար ու խոսում են.

— Դե լա՜վ,— կամացուկ ասում՝ է Կարոն,— դե լա՜վ, Ջավե՛ն, ուրիշ բանի մասին խոսենք...

Ու դեռ երկար ժամանակ լսվում է նրանց շշուկը։ Խոսում են այն մասին, որ այդ մեկ օրում իրար ավելի լավ ճանաչեցին, որ սրանից հետո ավելի լավ ընկերներ կլինեն, որ քննություններին էլ միասին կպատրաստվեն, իսկ երբ ավարտեն ուսումնարանը...

— Կխնդրենք վարպետին, որ մեզ մի գործարան ուղարկեն աշխատելու, հա՞, Կարո։

— Իհա՜րկե, դե քնենք, Ջավե՛ն։

Ջավենը անշշուկ լաց եղավ։ Լաց էր լինում նրա համար, որ լավ բան չէր իր արածը, նրա համար, որ իր ընկերներն այդքան բարի են, որ Կարոն ներեց, իսկ վարպետը խոսեց իր հետ ու էլի ներեց։

Ու քնեց միանգամից, խաղաղ ու ժպտալով, արցունքի կաթիլներն աչքերին։



# ԳԱՐՈՒՆ

ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑԱՆ

Ձմեռվա փափուկ վերմակը նետել,
Զարթնել է քնից բնությունն արդեն:
Եվ սար ու ձորեր թավիշով պատել,
Կանաչ են հագել դաշտեր ու արտեր:

Գարնան զեփյուռն է երկիրը շոյում,
Ջերմ համբույրելով գետինը դեռ պաղ.
Վառ արեգակն է երկնքում շողում,
Եվ ծաղիկներն են ժպտում ցողաշաղ:

Գիժ առվակներն են սարերից վազում,
Կարկաչով իրար փարված կարոտով.
Ծառերն են զանգուր ճյուղերով նազում,
Եվ հոտն է դանդաղ քայլում արոտով:

# ՀԱՍՄԻԿՆ ՈՒ ՀՐԱՉԻԿԸ

ՆՎԱՐԴ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Նկ. Վ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ

Մեքենան կանգ առավ: Վանդակից ազատված թռչնիկների նման դուրս նետվեցին Հասմիկն ու Հրաչիկը և, առանց սպասելու մայրիկին, ճռվողելով վազեցին կակաչներով ու թիթեռներով ծածկված կանաչ բարձունքով: Նրանց ուրախ քրքիջները խլացրին մայրիկի ձայնը: Նա իզուր կանչում էր երեխաներին և մեքենայից հանում ճամպրուկը: Բայց նրանք արդեն հասել էին տատիկի դռանը, զանգը տվել ու թաքնվել թփերի տակ: Դուռը բացվեց:

— Այն ո՞վ է, — գլուխը դուրս հանելով կանչեց տատիկը: Նա ակնոցների վերևից ուշադրությամբ նայեց չորս կողմը և տեսնելով, որ ոչ ոք չկա, տրտնջալով ուժգին փակեց դուռը: Հասմիկն ու Հրաչիկը թփերի տակից ծիկրակում և հազիվ էին զսպում իրենց ծիծաղը: Նոր էր դուռը փակել, երբ չարաճճիները վազեցին և զանգը նորից տալով թաքնվեցին: Կրկին բացվեց դուռը, էլի ոչ ոք չկար: Երրորդ անգամ նրանց չվիճակվեց զանգը տալ, որովհետև մայրիկի մատն արդեն սեղմում էր կոճակը: Սակայն զանգի ձայնին անմիջապես հաջորդեց մայրիկի սարսափելի ճիչը, որովհետև մի զորավոր հարված իջնում էր նրա գլխին: Այդ տատիկն էր, որ դռան ետևը թաքնված, ավելը ձեռքին, սպասում էր երրորդ զանգին: Բայց ճանաչելով իր աղջկա ձայնը, ավելը նետեց մի կողմ և փարվեց նրա վզին՝ թոթովելով.

— Քոռանա՜մ...



* * *

Առավոտյան Համիկն ու Հրաչիկը, մայրիկին տուն ճանապարհելուց հետո, տատիկից խնդրեցին թույլ տալ պարտեզում խաղալ: Բավական խաղալուց հետո, նրանք բոլորովին մոռացան տատիկի պատվերը և ձեռք-ձեռքի տված՝ դուրս եկան պարտեզից:

Երկվորյակները կանգ առան գյուղի ներկատան առջև և աչիկները կլոր բացած սկսեցին ուշադրությամբ դիտել վարպետ ներկարարի աշխատանքը:

— Համիկ, այդ ինչո՞վ է ներկում մուշտակը:

— Մուշտա՛կ, պատասխանեց քույրը, արի գնանք տուն:

* * *

Երբ տատիկը փռում էր կեսօրվա ճաշի սփռոցը, լսեց Բամբակի սովորական մլավոցը:

— Սպասիր, փիսիկ, քեզ առանց ճաշի չենք թողնի, — և դառնալով տեսավ, ոչ թե սպիտակ Բամբակին, այլ գարշելի մի սև կատու: Տատիկը սարսափած նրա զզվելի տեսքից, նահանջեց սեղանի ետևը: Անբախտ կատուն մռալով մոտենում էր նրան: Տատիկը հողաթափը ձեռքին օգնության կանչեց իր մոտ վազող թոռնիկներին:

— Համի՛կ, Հրաչի՛կ, հեռացրեք տնից այդ սև սատանային, — կանչեց նա և տեղում երեք անգամ



պտտվեց, ձեռքե՛րն ու աչքերը բարձրացրած առաստաղին, մի քանի «մեղա»-ներ շշնջալով:

— Բայց... տատիկ, ո՞ւր տանենք մեր կատվին, — հարցրին երեխաներն ապշած նայելով տատիկի արտասովոր ձևերին:

— Նա մեր կատուն չէ, — ճչաց տատիկը, — մեր կատուն սպիտակ է:

— Տատիկ, մենք նրա սպիտակ մուշտակը սև ներկեցինք, ներկարար քեռու նման, — ասաց Համիկը ձեռքերի մեջ տրորելով վարդագույն հագուստի փեշերը:

Տատիկն ապշած կանգ առավ:

— Քոռանամ, — ասաց նա, — քիչ էր մնում լեղիս պատռվեր, տեսեք ինչ օրի եք գցել խեղճ անասունին: Վաղը, որպես պատիժ, կմնաք տանը:

* * *

Հաջորդ օրը Համիկն ու Հրաչիկը նստած պատուհանի առաջ, կլորիկ այտերն առած թաթիկների մեջ, տխուր նայում էին պարտեզի թիթեռներին և ճռվողող թռչնիկներին, որոնք իրենց խաղերով ու ծլվլոցներով դուրս էին հրավիրում փոքրիկ բանտարկյալներին: Արևը շողում էր թերթիկները լայն բացած արևնավառ վարդերի ու մարգարտածաղիկների վրա: Ժրաջան մեղուներն անցնում էին հոգոց քաշող երեխաների աչքից և հանգիստ մտնում նեկտարով լի ծաղիկների շափրակների մեջ: Դեղնակտուց բադիկները քաջ զինվորների նման շարված, իրար ետևից հանդիսավոր կերպով մտնում էին արևի ճաճանչներով ողողված առվակի մեջ: Խաթուն հավերը պատսպարվել էին ստվերների տակ, միայն խայտաբղետ, գոռոզ աքլորը կուրծքը ցցած, կատարը բարձր, ճեմում էր բակում: Հրաչիկը մի պահ պոկելով իր հայացքն այդ տեսարանից, հարցրեց քրոջը.

— Համիկ, եթե կատվին սպիտակեցնենք, տատիկը կթողնի՞ դուրս գնանք:

— Իհարկե, բայց ջրով չի կարելի, մայրիկը կեղտը նավթով է մաքրում:

Նրանք հիացած այդ գյուտով, բոլորովին մոռացան իրենց դառը վիճակը և անցան գործի...



Սպիտակած կատվին տեղավորելով սեղանի վրա, երեխաները սպասում էին նրան: Կատուն հպարտ-հպարտ, նազելի շարժումներով, մռռալով պտտվում էր երեխաների առջև: Բայց հանկարծ կանգ առավ, մազերը ոզնու նման ցցեց և դունչը լայն բացած՝ աղիողորմ մլավեց:

— Միա՜ու՜ու՜...

Երեխաները ծիծաղում էին և ուրախությունից ծափ տալիս: Իսկ Բամբակը երկրորդ անգամ արձակեց իր ողբալի մլավոցը և սեղանից ցած գլորվելով, թռավ, բախվեց պատին: Ճանկելով մագլցեց վարագույրների վրա և նրանց հետ տապալվեց գետին: Երեխաները սկզբում հրճվում էին, կարծելով, որ նա այդ ձևով է արտահայտում իր գոհունակությունը, բայց տեսնելով նրա արտասովոր շարժումները, զարհուրելի մլավոցները, ահավոր ոստյունները, սարսափահար մտան սեղանի տակ: Բամբակը պատից նետվելով սեղանի վրա, ցած գլորեց տատիկի վարդագույն ջրամանը, և երեխաներն ամբողջովին ողողվեցին ջրով: Տատիկը, որ շուկայից էր վերադառնում, հեռվից լսելով ներսից եկող արտակարգ աղմուկը, զամբյուղները թողեց և վազեց տուն:

— Քոռանա՜մ... Ի՞նչ է պատահել իմ թոռներին: — Նրա աչքերի առաջ պարզվեց մի անսովոր խառնաշփոթություն: Թրջված երեխաներին դուրս քաշելով սեղանի տակից, արագ տարավ խոհանոց, մի-մի բաժակ ջուր խմեցնելու:

— Տատիկ, մենք նավթով սպիտակեցրինք Բամբակին, չգիտենք ինչու նա բարկացավ, — թոթովեց Հրաչիկը:

Տատիկը հասկացավ, որ նավթը գրգռել էր կատվի փափուկ մորթը և, որպես պատասխան, ամեն մեկի ետևին թեթև խփելով, դուրս ուղարկեց:



* * *

Երեխաների կատարած արարքը շատ էր վշտացրել տատիկին: Նա իր թոռներին չէր համբուրել լվացվելուց հետո: Աչքերը չէին ժպտում ակնոցների տակից և անտեսելով երեխաների հուզումը, ինքն իրեն գանգատվում էր մկներից, հավանոցում կատարած վնասների համար: Համիկն ու Հրաչիկը որոշեցին այդ օրը մի օգտակար գործ կատարել տատիկի համար: Ուստի դուրս բերին մկան թակարդը և նրա վրա մի մեծ կտոր հաց տեղավորելով, կապեցին այն հավանոցի մոտ գտնվող թթենուն: Իսկ իրենք թաքնվեցին վարդենիների հետևը և սպասեցին մկների երևալուն: Բայց հանկարծ զարմացած նայեցին իրար: Մկների փոխարեն հավանոցի ինքնահավան աքլորն էր բռնվել կտուցից, իսկ հավերը կտցահարում էին պոկված հացի կտորը: Երեխաները վազեցին աքլորի մոտ, որն ուժեղ թափահարելով իր խայտաբղետ թևերը, իզուր փորձում էր ազատվել ծուղակից: Նրանք նկատեցին, որ ինքնահավանի կտցի ծայրը մնացել էր ծուղակում, և այնպես հուսահատ նայեցին իրար, որ եթե նույնիսկ տատիկը լիներ այդտեղ, պիտի խղճար նրանց:

— Համիկ, տատիկը պիտի բարկանա, — ասաց Հրաչիկը:

— Արի կավ կպցնենք կտցին, տատիկը չի իմանա:

Կրկին շողացին նրանց սևուկ աչքերը, և նրանք անմիջապես անցան գործի: Բայց խոսք չհասկացող աքլորի ծղրտոցները տատիկին առաջնորդեցին հավանոց



* * *

— Մի՛ թաթախեք մատներդ սերուցքի մեջ, բավական է ինչքան կերաք, մնացածը՝ թողե՛ք վաղվան:

Երկվորյակները նայեցին իրար, համարյա համաձայն չլինելով տատիկի առաջարկին: Համիկը նշան արեց եղբորը՝ դուրս գալու:

— Կարո՞ղ ես մեծ բեղերով և երկար պոչով մուկ պատրաստել:

— Իհարկե...

Հազիվ տատիկը դուրս էր եկել խոհանոցից, երեխաները կավե մկները դրին սերուցքի վրա և, իբր թե անտեղյակ ամեն ինչից, առաստաղին նայելով դուրս եկան: Թթենու տակ կանգնած, աչիկները լայն բացած, սպասում էին: Լսելով տատիկի աղաղակը ներս վազեցին:

— Քշեցե՛ք այդ մկներին, — ճչում էր նա ետ-ետ գնալով:

Երեխաները մկներին շտապ դրին գրպանները:

— Քոռանա՛մ... ամբողջ սերը ապականեցին, տարեք թափեցեք:

Երեխաների փափագը կատարված էր: Նրանք մտան ծաղիկների մեջ ու կերան ամբողջ սերը: Բայց գիշերը տատիկը նրանց հագուստները ծալելու ժամանակ նրանց գրպաններից հանեց կավե մկները:

Բարի տատիկի համբերությունը սպառվում էր:

* * *

Այգաբացի շեփորը հնչեց հավաբնից: Համիկն ու Հրաչիկը անկողնուց ցատկելով, սկսեցին հագնվել: Բայց հանկարծ Համիկի թևը կախված մնաց օդում, որովհետև սեղանի վրայից անթարթ աչքերով իրենց էին նայում երկու կավե մկներ:

— Վա՛յ, Հրաչիկ, տատիկն իմացել է, — ասաց Համիկը խղճուկ ձայնով, — նայիր սեղանի վրա:

Հանկարծ Հրաչիկը մատը դնելով շրթներին, շըշընջաց.

— Գալիս է...

Եվ սարսափած մտան քաղցրավենիների պահեստը՝ պահարանի ետևը: Տատիկը մտավ սենյակ, և նրա լրջությունն անմիջապես փոխվեց զարմանքի, երբ երեխաներին սենյակում չգտավ: Եվ նայելով բաց պատուհանին՝ գունատվեց:

— Քոռանա՛մ... գնացել են:

Նրանց կանչելով վազեց դուրս: Պարտեզում ոչ ոք չկար: Խեղճ տատիկը ամեն տեղ փնտրում էր թոռներին: Հարևաններն ու բարեկամներն էլ միացած նրան՝ սկսեցին որոնել: Լաց էր լինում տատիկը: Հարևաններից ոմանք խորհուրդ տվին զանգ տալ քաղաք՝ նրանց մորը: Իսկ ոմանք հուսահատ դիմեցին քեռի Ալեքին՝ գյուղի միլիցիոներին: Կեսօրին մայրը գունատված հասավ տատիկի մոտ, որը լացակումած նայելով աղջկան, կակազեց:

— Քոռանա՛մ... Չգտանք:

Քեռի Ալեքն իր շան՝ Ջուլբարսի հետ հայտնվեց տատիկի դռանը և սկսեց մանրամասն հետախուզություն: Տատիկից և մայրիկից ստացած տեղեկությունները՝ երկվորյակների տարիքի, զբաղմունքի, կրթության և անցյալի վերաբերյալ, խնամքով արձանագրեց իր տետրում և ինքնավստահ կանչեց Ջուլբարսին: Բայց Ջուլբարսն անհետացել էր: Հանկարծ լսվեց շան ուրախ հաչոցը: Աստիճաններով վեր վազեցին քեռի Ալեքը, տատիկը և մայրիկը: Տեսան Ջուլբարսին երկու թաթերի վրա կանգնած, ականջները ցից՝ երեխաներից քաղցրավենի էր ստանում: Երկվորյակների ձեռքերն ու դեմքերը ամբողջովին լղոզված էին քաղցրավենիով: Տատիկը ժըպտում էր արտասուքի միջից: Բայց մայրիկը չըներեց նրանց և, որպես պատիժ, որոշեց իր հետ քաղաք տանել: Համիկն ու Հրաչիկը խորապես զղջում էին և ներողություն խնդրում: Բարի տատիկը թեև ներեց նրանց, բայց մայրիկի որոշումն անխախտ էր:



# ԱՌԱՋԻՆ ՕԳՆՈՒԹՅՈՒՆ

*Պ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ*

Գյուղական փոքրիկ հիվանդանոցի ընդունարանում տխուր ու գլխիկոր կանգնել էր տասներեքամյա մի տղա։ Միջանցքից լսվող ամեն մի ոտնաձայնի հետ նա բարձրացնում էր գլուխը և արցունքոտված աչքերը հառում դռան կողմը։ Նա սպասում էր ուրախ լուրի։ Բայց ոչ ոք ներս չէր մտնում։

Իսկ եթե ուշ լինի՞, և բժիշկը չկարողանա՞ փրկել նրա կյանքը... Այս միտքը տանջում էր Խորենին։ Գլուխը սաստիկ ցավում էր, կծկվում ու անհանգիստ խփում էր սիրտը։ Չէ՞ որ այդ բոլորի համար մեղավոր էր միայն ինքը։ Ինչու՞ խելքին փչեց համոզել Վազգենին, որ սար գնան՝ վերջին ձնծաղիկները քաղելու։ Վազգենը չէր ուզում, ինչու՞ խնդրեց, նույնիսկ նեղացավ ասելով, թե իսկական ընկերը իր ընկերոջ խոսքը չի մերժի։ Վազգենը լսեց իրեն և հիմա, խնդրեմ. նրա կյանքը...

Խորենի աչքի առջև նորից պատկերվեց այդ սարսափելի տեսարանը։

* * *

Կիրակի էր։ Խորենն ու Վազգենը հանել էին կոշիկներն ու բոբիկ ոտքերով քայլում էին լանջն ի վեր։ Փափուկ ու խոնավ գետնից գոլորշի էր բարձրանում՝ օդը լցնելով գարնանային հողի անուշ ու հաճելի բուրմունքով։ Ուրախ դայլայլով նավարկում էին թռչնակները։ Հանկարծ տղաները կանգ առան։ Երկու քայլ հեռու, մեծ սալաքարի վրա անշարժ պառկել էր մի երկար ու սև օձ և տաքանում էր արևի տակ։

—Թունավոր է,—սարսափեց Վազգենը։

—Է, վախկոտ,—ծիծաղեց Խորենը,—օձը հիմա վտանգավոր չէ, նրա մեջքը դեռ սառած է։ Չե՞ս տեսնում՝ արևկողի է ընկել, որ տաքանա,—ասաց ու ավելի մոտենալով, ձեռքի երկար ճիպոտը կպցրեց օձի պոչին։

Օձը շարժվեց պառկած տեղում։

—Մոտ արի, մի՛ վախենա,—կանչեց Խորենը։

Վազգենը վախվխելով առաջ եկավ։ Օձը գալարվեց, կծկվեց և, գլուխը մի փոքր վեր ցցելով, սառած աչքերով նայեց տղաներին։ Խորենը ճիպոտը մոտեցրեց օձի գլխին։ Օձը բաց արեց բերանը, թունոտ հայացք նետեց նրանց կողմը և ավելի կծկվեց։ Վազգենը ետ-ետ գնաց։ Վախեցավ նաև Խորենը և ճիպոտը ետ քաշեց։

—Գնանք, էլ մի՛ կանգնիր,—ընկերոջ թևից քաշեց Վազգենը։

Տղաները շուռ եկան, որ հեռանան։ Եվ հենց այդ պահին օձը գունդ ու կծիկ դարձած, պոկվեց տեղից ու նետվեց նրանց վրա։ Լսվեց Վազգենի աղեկտուր ճիչը, և նա գետին գլորվեց։ Խորենը բնազդորեն մի քանի քայլ վազեց ու ետ դարձավ։ Երեսնիվայր ընկած Վազգենի ոտքերի արանքից դուրս եկավ օձը և դանդաղ, հաղթողի հանդիսավորությամբ սողաց դեպի սալաքարը։

# ՁԳՈ

Վ. ՏԱԼՅԱՆ

*Այ, այս փոքրիկ Արամը*
*Առավ իրենց պարանը,*
*Արագ վազեց, իջավ բակ*
*Ու ձայն ավեց.—Է՜յ, Սամի՛կ,*
*Համի՛կ, Թամի՛կ... Եկեք դուրս՝*
*Պարան ձգենք... բարի լույս*
*Եկա՜ն, եկա՜ն, հա եկան*
*Երկու բակից հարևան,*
*Երկու խմբակ կազմեցին,*
*Իրար դիմաց կանգնեցին.*
*Ու պարանը ափ առան,*
*Կամաց-կամաց Թափ առան,*





Ձակատի վրա զգալով ընկերոջ ձեռքերի հպումը, Վազգենը բաց արեց աչքերը։ Վախից գունատվել էր, լեզուն՝ կապ ընկել, մարմինը՝ թուլացել։ Ոտնկը կպել էր քարին, արյունլվիկ դարձել և ցավում էր անտանելի կերպով։ Բայց դա ոչինչ. հիմա թույնը կտարածվեր նրա արյան մեջ և... վերջ... Բայց երկուսն էլ չգիտեին ինչ անել։

Տեսնելով, որ Խորենը ոտքի չի կարող կանգնել, Վազգենը շալակեց նրան ու վազեց դեպի գյուղ։ Խորենը Վազգենի ծանրությունը չէր զգում։ Նա միայն մի բանի մասին էր մտածում, որքան հնարավոր է, ընկերոջը շուտ հասցնել բժշկի մոտ և փրկել նրա կյանքը։ Բայց գյուղին դեռ չհասած՝ Խորենը բոլորովին ուժասպառ եղավ և ստիպված եղավ ընկերոջն իջեցնել շալակից։ Վազգենը նայում էր խամրող աչքերով։ Խորենը վախից քիչ մնաց այլևս չկարողանար զսպել արցունքները և բարձրաձայն լաց լիներ։ Մեկ-երկու րոպե հանգստանալուց հետո, Խորենը նորից շալակեց ընկերոջն ու սկսեց վազել...

* * *

Դռան ձայնը սթափեցրեց Խորենին։ Ներս մտավ բժիշկ Պետրոսյանը։ Տղան առաջ նետվեց և սարսափահար ու հարցական հայացքով նայեց բժշկին։

—Եթե մի քիչ էլ ուշ հասցնեիր, շատ դժվար կլիներ, բայց հիմա ոչինչ չի լինի, կարող ես հանգիստ լինել։

Խորենը թեթևացած շունչ քաշեց ու ժպտաց արցունքի միջից։ Բժիշկը շարունակեց.

—Իհարկե, լավ ես արել, որ առանց ժամանակ կորցնելու այստեղ ես բերել։ Իսկ եթե գյուղը հեռու

## Ուժ

Այս մի խումբը դես ձգեց,
Այն մի խումբը դեն ձգեց.
Հա տնքացին՝ ուֆ, ուֆ, ուֆ...
Հա փնչացրին՝ ուխ, ուխ, ո՜ւխ...

Մեկ էլ լսվեց զիլ մի ճիչ,
Ու վերջացավ ամեն ինչ.
Սրանք այստեղ փռվեցին,
Նրանք այնտեղ փռվեցին։

Իսկ ո՞վ հաղթեց, դե ասեք.
Է՜, չգիտե՞ք, չգիտե՞ք...
Հաղթեց փթած պարանը,
Որ բերել էր Արամը։



Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ



Նկ. Ն. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ

լիներ, ուրեմն ընկերոջդ կյանքը մեծ վտանգի տակ էր։ Բայց դու ավելի շուտ կարող էիր օգնել նրան՝ ցույց տալով առաջին օգնությունը։ Պետք է խայթած տեղը վերևից ու ներքևից հաստ թելով ամուր կապեիր և, եթե բերանիդ մեջ վերք չկա, ծծեիր ու թափեիր թույնը։ Դու մեծ տղա ես և այդպիսի բաները պետք է որ գիտենաս…

Խորենը շիկնեց մինչև ականջները։

**Պատանի ընթերցող, իսկ դու կարո՞ղ ես առաջին օգնությունը ցույց տալ ընկերոջդ կամ քեզ, եթե անհրաժեշտ լինի։ Մի՛ մոռացիր, որ շատ հաճախ առաջին օգնությունը ցույց տալուց է կախված լինում մարդու կյանքը։**

**Քեզ օգնելու նպատակով տպագրում ենք մի քանի խորհուրդներ։**

ՑՐՏԱՀԱՐՈՒԹՅՈՒՆ.—*Երբ դրսում սաստիկ նառնամանիք է, դուրս գալուց առաջ դեմքին պետք է քսել վազելին կամ կարագ։ Դա մաշկը պաշտպանում է ցրտահարությունից։ Ցրտահարված տեղերը պետք է շփել բրդյա շորով, ձեռնոցով, շարֆով։ Երբ սպիտակած մաշկն սկսի կարմրել ու վերականգնել իր զգայնությունը, պետք է կարագ քսել, իսկ եթե բշտիկներ երևան՝ կապել։ Ցրտահարվածին պետք է անմիջապես տեղափոխել տաք տեղ, մաշկը շփելուց հետո թեյ խմեցնել, փաթաթել տաք շորերով և կողքերին տաք ջրով լի շշեր շարել։*

*Հոգնած և սոված մարդը խոնավ շորի մեջ կամ թաց ոտքերով կարող է ցրտահարվել նույնիսկ թեթև ցրտի դեպքում։*

ՈՒՇԱԳՆԱՑՈՒԹՅՈՒՆ.—*Ուշագնաց մարդուն պետք է այնպես պառկեցնել, որ ոտքերը ավելի բարձր լինեն, քան գլուխը։ Դա նրա համար է, որպեսզի մեծանա արյան հոսանքը դեպի ուղեղը։ Պառկեցնելուց հետո արձակել օձիքն ու գոտին և սառը ջուր շաղ տալ երեսին կամ անուշադրի սպիրտ կաթեցնել բամբակի վրա ու մոտեցնել քթին։*

ԿԱՅԾԱԿՆԱՀԱՐՈՒԹՅՈՒՆ.— *Արհեստական շնչառություն տալ, մինչև շնչառության վերականգնումը։ Եթե հիվանդի վիճակը շատ է ծանր, արհեստական շնչառություն պետք է տալ մի քանի ժամ շարունակ։*

ԽԵՂԴՎՈՂԻՆ ՕԳՆԵԼԸ.—*Խեղդվողին պետք է մոտենալ հետևի կողմից և բռնել մազերից կամ թևատակերից այնպես, որ նա չկառչի օգնություն ցույց տվողին։ Ջրից հանելուց հետո քիթն ու բերանը պետք է մաքրել լորձունքից և ավազից։ Եթե բերանը փակ է, պետք է զգուշորեն բաց անել՝ ատամների արանքը դնել, գրիչ, կամ որևէ փայտի կտոր դնելով։ Օձիքն ու գոտին արձակելուց հետո, պետք է գլուխը ներքև կախել, որ մաքրվեն ստամոքսն ու շնչափողը։ Դրանից հետո տալ արհեստական շնչառություն։*

ԱՐՆԱՀՈՍՈՒԹՅՈՒՆ ՔԹԻՑ.— *Գլուխը մի քիչ ետ թեքել, քթածակերի մեջ դնել բամբակ կամ մառլյա և մատներով պահել 5—10 րոպե։ Եթե հնարավոր է, քթի վրա դնել սառը թրջոց։*

ԱՐՆԱՀՈՍՈՒԹՅՈՒՆ ՎԵՐՔԻՑ.— *Վերջավորությունը բարձրացնել վերև և սեղմել զարկերակը՝ վերքից մի քիչ բարձր։ Եթե արնահոսությունը ուժեղ է,*

վրան պետք է մաքուր շորի այրուք դնել և ամուր կապել։ Եթե վերքը ծանր է՝ պետք է հասցնել բժշկի։ Որքան հնարավոր է, շուտ պետք է կանգնեցնել արնահոսությունը, որ վիրավորը արնաքամ չլինի։

*ՔԵՐԾՎԱԾՔՆԵՐ ՈՒ ԹԵԹԵՎ ԿՏՐՎԱԾՔՆԵՐ.*— Պետք է յոդ քսել և կապել բոլորովին չօգտագործված ու մաքուր մառլյայով։ Իսկ եթե դաշտում ես գտնվում, և մոտերքում «եզան լեզու» կա, վերքը պետք է մաքուր լվանալ, վրան այդ բույսի մաքուր տերև դնել ու կապել։

*ՀՈԴԱԽԱԽՏՈՒՄՆԵՐ ՈՒ ՋԱՐԴՎԱԾՔՆԵՐ* —Ինքնուրույն կերպով չի կարելի խախտված հոդը գցել իր տեղը։ Հնարավոր է վնասել ոսկորներն ու հյուսվածքները։ Պետք է դիմել բանիմաց մարդու կամ բժշկի։ Եթե ջարդվածքի կասկածանք կա, համոզվելու համար չի կարելի շոշափել ցավող տեղը կամ վեր բարձրացնել։ Վնասված վերջավորությունը պետք է հանգիստ վիճակում պահել և բարակ փայտիկներ դնելով, կապել այնպես, որ չշարժվի։

*ԵՐԲ ԿՈՇԻԿՆԵՐԸ ՀԱՐՈՒՄ ԵՆ ՈՏՔԵՐԸ.*—Ամենից առաջ վերացնել պատճառները։ Հետո լվանալ ցավող տեղը և վազելին քսել։ Եթե վերք է առաջացել, պետք է թրջել կալիումի մարգանաթթվի լուծույթով, ապա ստրեպտոցիդի փոշի ցանել վրան և կապել։ Բշտիկները չի կարելի պատռել, պետք է վազելին քսել ու կապել վիրակապով։

*ԹՈՒՆԱՎՈՐՈՒՄ ՈՒՏԵԼԻՔԻՑ* —Հայտնի է, որ փչացած սննդամթերք կամ, անծանոթ բույսեր ուտելը վնասակար է։ Բայց հաճախ ոմանք կարևորություն չեն տալիս դրան կամ սխալմամբ ուտում են։ Հետևանքը լինում է այն, որ դրանք ընկնելով ստամոքսի մեջ, թունավորում են օրգանիզմը։ Թունավորման նշաններն են՝ սրտախառնուք, փորլուծ, որովայնային ցավեր, գարկերակի թույլ խփոցներ։ Ամենից առաջ պետք է մաքրել ստամոքսը։ Դրա համար անհրաժեշտ է խմել 4—5 բաժակ ջուր և, կոկորդի վերին պատը գրգռելով, փսխում առաջ բերել։ Ջրի փոխարեն կարելի է խմել նաև անգլիական աղի լուծույթ (մեկ ճաշի գդալ աղը լուծել կես բաժակից մի քիչ պակաս ջրի մեջ)։ Հետո հիվանդին պետք է տալ տաք թեյ կամ սուրճ և տաք ջրով լցված շիշ դնել ոտքերի տակ։ Եթե վիճակը վատթարանում է, անհրաժեշտ է անմիջապես հասցնել հիվանդանոց...



# Գարնանային

ՄԻՔԱՅԵԼ ՔԱՆՔԱՆՅԱՆ

**Ձմեռն իր ճերմակ փեշերն հավաքեց**
**Ու անհետացավ սարերի գլխին,**
**Արևի շողը ամպերին քսվեց,**
**Ու պայծառ նայեց երկինքը հողին։**

**Մի տղա վազեց գարնան հետքերով,**
**Որ խաղեր հյուսի առվի եզերքին,**
**Թիթեռներ բռնի իր նուրբ ձեռքերով**
**Եվ երգով լցնի մայրիկի հոգին։**



ՏԻԳՐԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆ
*(Շախմատի գծով Սովետական Միության չեմպիոն, միջազգային գրոսմայստեր)*

# ՍԻՐԵՑԵ՛Ք ՇԱԽՄԱՏԸ

Շախմատային խաղը շատ հին և իմաստուն խաղ է, որը գնալով ավելի ու ավելի լայն տարածում է գտնում։ Շախմատ են խաղում և՛ տոթակեզ Աֆրիկայի, և՛ գեյզերների երկրի՝ Իսլանդիայի, և՛ հեռավոր Ավստրալիայի ժողովուրդները։ Աշխարհում չկա մի անկյուն, որտեղ ժողովրդի կուլտուրական կյանքում շախմատը չգրավի իր պատշաճ տեղը։

Բայց շախմատի նկատմամբ մեծ սեր են ցուցաբերում հատկապես մեր երկրում։ Սովետական միլիոնավոր մարդիկ իրենց ազատ ժամանակը նվիրում են այս անսպառ հետաքրքրություններով լի խաղին։ Շատերին գրավում են շախմատային խաղի կոմբինացիաները, որոնք ազատություն են տալիս մարդու երևակայությանը։ Ուրիշներին էլ դուր է գալիս շախմատային խաղում կիրառվող ստրատեգիական մտքի տրամաբանական հետևողականությունը։ Բայց բոլորին համախմբում է շախմատի նկատմամբ ունեցած սերը։ Երբ ավարտվեցին առաջնության 26-րդ մրցումները, Հայաստանի շախմատիստները ինձ հրավիրեցին Երևան։ Ես եղա շատ կոլեկտիվներում, հանդիպում ունեցա բազմաթիվ շախմատասեր մարդկանց հետ։ Ուր որ գնում էի, ամենուրեք տեսնում էի շախմատի նկատմամբ իմ հայրենակիցների ունեցած մեծ հետաքրքրությունը, և դա ինձ շատ էր ուրախացնում։ Տարիներ առաջ դա աչքի չէր ընկնում, որովհետև այն ժամանակ քչերն էին զբաղվում շախմատով։ Ես եղա նաև Երևանի Պիոներների պալատում, շախմատ խաղացի իմ պատանի բարեկամների հետ։

Այստեղ ես ավելի ու ավելի համոզվեցի, որ շախմատը լայն տարածում է գտել Հայաստանում և ամենից առաջ՝ դպրոցականների շրջանում։ Տեսնելով այդ շնորհալի պատանիների խելացի ու մտածված խաղերը, ես ուղղակի հրճվանք էի ապրում։ Նրանց մեջ ես տեսնում էի ապագա գրոսմայստերներին ու տաղանդավոր շախմատիստներին։

Սակայն, սիրելի երեխաներ, ինչպես ամենուրեք, այնպես էլ շախմատում, հաջողության կարելի է հասնել միայն համառ աշխատանքով։ Ես էլ ձեր հասակին էի, երբ սկսեցի շախմատ խաղալ։ Առաջնության մրցումների ժամանակ ունեցած հաջողությունը ինձ թևավորում էր, բայց չէր հանգստացնում, իսկ անհաջողությունները չէին հուսահատեցնում, այլ մղում էին ավելի համառ աշխատանքի։ Ես կարդում էի նաև շախմատի վերաբերյալ եղած գրքերն ու հոդվածները, որոնք մեծ չափով օգնում էին ինձ պարզելու բազմաթիվ գաղտնիքներ։ Հաճախ ժամերով նստում և ինքս ինձ խորհում ու վերլուծում էի ականավոր շախմատիստների խորիմաստ պարտիաները։

Իմ պատանի բարեկամնե՛ր, որպեսզի ձեր միջից դուրս գան անվանի շախմատիստներ, շատ բան է

## ԵՐԵՔ

*Նվիրվում է շախմատի գծով ՍՍՌՄ-ի չեմպիոն Տ. Պետրոսյանին*

№ 1



*Մատ երկու քայլից*

պահանջվում ձեզանից: Ամենից առաջ պետք է շախմատ խաղալ սովորեցնեք ձեր ընկերներին, եղբայրներին ու քույրերին, և դառնաք շախմատի եռանդուն տարածողներ: Կազմակերպեք շախմատի խմբակներ, մրցումներ՝ դասարանի լավագույն շախմատիստի կոչման համար, ապա միջդասարանային ու միջդպրոցական մրցումներ: Շախմատ խաղալուց բացի, կարդացեք շախմատային գրքեր, հետևեցեք անվանի շախմատիստների խաղերին, լուծեք թերթերում և ամսագրերում առաջադրվող խնդիրները: Եվ ամենակարևորը՝ սիրեցե՛ք շախմատը, առանց սիրելու անկարելի է ըմբռնել մտքի մարզման բոլոր նրբերանգները, որոնք ի հայտ են գալիս այդ խաղում:

Ցանկանում եմ ձեզ հաջողություն՝ ուսման և սպորտի մեջ:







Երեսուն շախմատի տախտակի առաջ նստած են կարմիր վզկապավորները: Շախմատի գծով Սովետական Միության չեմպիոն, միջազգային գրոսմայստեր Տիգրան Պետրոսյանը միաժամանակյա սեանս է տալիս նրանց հետ:

## ԽՆԴԻՐ

Առաջարկ՝ Հ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

(Շախմատի միջազգային վարպետ)

№ 2



Մատ երկու քայլից

№ 3



Մատ երկու քայլից

# ՏԱՐԱԾԱԿԱՆ ԳՈՒՆԱՎՈՐ ՀԵՌՈՒՍՏԱՏԵՍՈՒԹՅՈՒՆ

Դուք նստած եք ձեր սենյակում: Հանկարծ դիմացի պատը անհետանում է, և նրա տեղը հայտնվում է... անծայրածիր ծովը: Մայրամուտը վառում է իր նուրբ երանգները: Կապույտ ալիքները ծուլորեն դեպի ափ են գլորում իրենց սպիտակավուն կատարները: Ահա մի ալիք, որ մյուսներից կայտառ է երևում, արագ մոտենում է ձեզ: Դուք ակամա բարձրացնում եք ոտքերը, որպեսզի չթրջվեք: Սա ի՞նչ է, որտե՞ղ ենք մենք գտնվում, գուցե Սևանի ափի՞ն... Բայց ո՛չ, Սևանի ափերը զուրկ են կանաչից, իսկ այստեղ փարթամ ծառեր և արտասովոր գեղեցիկ ծաղիկներ կան: Դուք նույնիսկ զգում եք նրանց բուրմունքը... գուցե դա թվում է ձեզ, ո՛չ, դա հենց այդպես է: Իսկ այն ի՞նչ է կախվել ծառից, օ՜հ, մի ահռելի օձ: Ահա նա դեպի ձեզ է ձգում իր սպառնալի փայլփլող, երկար մարմինը, նրա սառը հայացքը հիպնոսում է ձեզ, արդեն շատ մոտ է... Դուք սարսափահար եք դառնում, որ փախչեք և... ուշքի եք գալիս՝ տեսնելով ձեր սենյակի ծանոթ իրերը:

Նկարագրած պատկերում միայն բուրմունքն էր, որի զգալը դեռ ապագայի հարց է, իսկ ինչ վերաբերում է պատկերի խորությանը, գույների և հեռավորությունների բնականությանը, էկրանի մեծությանը, ապա դա սկզբունքորեն լուծված հարց է: Դեռ ավելին, մեր նկարագրած պատկերի խորությունը, ծավալայնությունը իրական է և ոչ թե տեսախաբություն, որը մինչ այժմ ստեղծվում էր հարթ պատկերից՝ հատուկ ակնոցների շնորհիվ:

Այդ ամենը հնարավոր է դառել շնորհիվ նոր նյութի՝ էլեկտրաֆլորի, որը վերջերս է ստեղծվել Ամերիկայի Միացյալ Նահանգներում: Էլեկտրաֆլորը ընդունակ է կուտակելու էլեկտրական էներգիա: Եթե էլեկտրաֆլորին ավելացվեն հատուկ լուսավորվող նյութեր, ապա այդ կոմբինացիան լարվելու դեպքում տարբեր գույների լույս կարձակի: Գործնականում՝ ապակյա թիթեղի վրա բարակ անցքերի շարք են բացում: Անցքերի մեջ էլեկտրաֆլոր են լցնում: Այնուհետև ապակու վրա բարակ լարերի ուղղանկյուն ցանց են քաշում այնպես, որ լարերի հատման կետերը համընկնեն անցքերի հետ: Այդ լարերի վրա էլեկտրական լարում է տրվում, էլեկտրաֆլորը ակտիվացնելու համար:

Թիթեղի չափսերը կարող են ուզած մեծության լինել:

Օպտիկայից հայտնի է, որ բոլոր գույներն ու երանգները կարելի է ստանալ երեք հիմնական գույներից, դրանք են՝ կապույտը, կարմիրը և դեղինը: Ուրեմն՝ կցելով իրար երեք հատ թիթեղ, ընդ որում յուրաքանչյուրը լուսավորվում է իրեն հատուկ հիմնական գույնով, կարելի է ստանալ գունավոր, բայց հարթ պատկեր: Այժմ, եթե կցենք իրար որոշ քանակությամբ այդպիսի եռաթիթեղ ծրարներ, ապա կստանանք ծավալային, խորը պատկեր: Ինչքան ավելի շատ մեծ լինի ծրարների քանակը, այնքան ավելի խորը կստացվի պատկերը:

Այդպիսի փորձեր արդեն արվել են: Ամենամոտ ապագայում մեր սենյակը կդառնա զարմանալի ճանապարհորդությունների և արկածների աշխարհ:

**Ռ. ՄԵԼԻՔ-ՍԱՀԱԿՅԱՆ**





## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝ նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*

**Այս համարի հետ տրվում է անվճար հավելված հոկտեմբերիկների համար**


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝** ԱՍԱՏՐՅԱՆ Օ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՖՅԱՆ Պ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41.

Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—41—83, 2—39—06:

ՎՖ 02443. Պատվեր 298: Տպաքանակ 6700: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 4 III 1959 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91: Գինը 2 ռ.





Ծրջտ լրացնելուց հետո հորիզոնական ուղղությամբ դուք կկարդաք Ա. Ս. Պուշկինի երկերի հիման վրա գրված *11* օպերայի և 2 բալետի անուն։

*Կազմեց՝ Գ. ՍԱՐԳՍՅԱՆ*

## ԿՐՈՍՎՈՐԴ



Այս կրոսվորդի մեջ ամեն մի բառը կազմված է 5 տառից։

ՈՒՂՂԱՀԱՅԱՑ — 1. Քաղաք Սև ծովի ափին, 2. մետաղ, 3. միրգ, 4. գետ Աֆրիկայում, 7. գետ Եվրոպայում, 8. հեքիաթային ձի, 12. Լենա գետի վտակներից, 13. ռուս մեծ ճանապարհորդ, 14. սովետական ռեսպուբլիկայի մայրաքաղաք, 15. հայ մեծ վիպասան։

ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ — 5. Գետ ՍՍՌՄ-ում, 6. «Կուզիկ-քուռակիկ» գրքի հեղինակը։ 7. թռչուն, 9. հատապտուղ, 10. ռուս մեծ նկարիչ, 11. Գոգոլի հերոսներից, 14. Գորկու վեպերից, 15. լիտվական սովետական կին գրող, 17. Թումանյանի «Գիքորը» պատմվածքի հերոսներից, 18. «Գուլիվերի ճանապարհորդությունները» գրքի հեղինակը։

*Կազմեց՝ Ց. ՂԱՆԴԻԼՅԱՆ*
*(Լենինական)*

## ՀԱՆԵԼՈՒԿ

Ծաղիկ եմ, բայց թերթեր [illegible]ունեմ,
Ունեմ բաժակ [illegible],
Առավոտյան [illegible] դպրոցում եմ,
Երեկոյան մ[illegible]



## ՈՒԹ ՀԱՎԱՍԱՐ ՄԱՍԻ

Այս պատկերը բաժանեք 8 նույնանման և հավասար մասերի այնպես, որ ամեն մի մասում լինեն բոլոր թվերից։

*Առաջարկ՝ Հ. ՄԻՐԶՈՅԱՆԻ*

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| 4 | | | | | | | 1 |
| 1 | 5 | 8 | 2 | 6 | 2 | 8 | 4 |
| 6 | 2 | 7 | 9 | 9 | 5 | 5 | 2 |
| | 4 | 3 | 6 | 7 | 3 | 8 | |
| | 7 | 3 | 5 | 3 | 9 | 1 | |
| | 9 | 8 | 1 | 7 | 4 | 6 | |
| | 1 | 7 | 9 | 3 | 8 | 1 | |
| | 6 | 4 | 2 | 6 | 5 | 2 | |
| | 3 | 7 | 5 | 1 | 5 | 4 | |
| 5 | 8 | 6 | 1 | 6 | 3 | 7 | 9 |
| 8 | 3 | 9 | 4 | 7 | 9 | 2 | 4 |
| 2 | | | | | | | 8 |

Է. ԱՎԱԳՅԱՆ

# Ի՞նչ անեմ

Ունեմ սղոց, մուրճ, ուրագ,
Աշխատում եմ շատ արագ.
Միայն թե ես գործ չունեմ,
Դե ասեք, ի՞նչ, ի՞նչ անեմ

Թե կոթ սարքեմ ես մուրճի
Դա, իհարկե, մի գործ չի.
Թե տախտակը լավ կոկեմ
Մեր շան բույնը նորոգեմ.



Շինեմ դոնակ մեծ, հարմար...
Բա գո րծ է դա ինձ համար.
Իսկ թե սեղան ես սարքեմ...
Չէ, դժվար է, կհոգնեմ
Լավ գործիքներ շատ ունեմ,
Միայն թե ես գործ չունեմ.





Նկ. Ս. ԱՋԻՋՅԱՆԻ